1916 № 39.—Սեպտեմբերի 25 ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 *րուբլի*, կէս տարուան 2 *ր.* 50 *կ.։ Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝* տարեկան 3 *ր.*, կէս տարուան 2 *ր.։ Արտասահման՝* տարեկան 5 *ր.*, կէս տարուան 3 *ր.*

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** *Թիֆլիս, Արտասարդեան հրապար. № 7.* **Հեռախօս № 29.**

*Պոստի հասցէն.*—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** *տողին* **10** *կոպ.*

*Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։*

*Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։*

*Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։*

*Տպագրութեան համար անյարմար ճղճակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարւում գրաւոր բացատրութիւններ տալ։*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## Ի՞ՆՉ Է ՊԱՀԱՆՋՒՈՒՄ ԳԱՂԹԱԿԱՆԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐԻՑ

*Գաղթական երեխաների կրթութեան գործը այժմ դրւում է հաստատ հողի վրայ։*

*Մեծ. Իշխանուհի Տատեանա Նիկոլայեւնայի Կոմիտէն իր վրայ է վերցրել գաղթականական դպրոցների նիւթական հոգատարութիւնը։*

*Կրթական մասի մէջ կոմիտէն չէ խառնւում։ Այդ թողնուած է այն հայկական հաստատութիւններին, որոնք զբաղւում են գաղթականների գործերով։*

*Բնականաբար հարց է ծագում թէ մեր ազգային շահերի տեսակէտից ինչ սկզբունքների վրայ պէտք է դրուի գաղթական երեխաների ուսումը։*

*Հարցը լուրջ է, բայց պատասխանն էլ պարզ է. եթէ ի նկատի առնուի և գիտակցուի այն ճշմարտութիւնը, որ* դպրոցն է կոչուած ծառայելու կեանքին եւ ոչ թէ կեանքը դպրոցին։

*Ինչ որ պահանջւում է տաճկահայերի իրականութիւնը, ինչ կարիքներ, որ ստեղծել է նրանց կեանքը,—անա՛ այդ իրականութեան և այդ կարիքներին պէտք է ծառայի դպրոցը յանուն ժողովուրդի և երկրի բարօրութեան։*

*Տարածելով լուսաւորութիւն ժողովուրդի մէջ դպրոցը միաժամանակ պէտք է գործնականապէս պատրաստի իր սաներին կեանքի համար, ծանօթացնի կեանքի պահանջների հետ և տայ նրանց համապատասխան գիտելիքներ, զարգացնի նրանց մէջ սէր դէպի աշխատանքը, որպէս զի նրանք, երբ գործելու ասպարէզը մտնեն, կուռ կերպով զինուած լինեն, դիւրաւ չը խորտակուեն գոյութեան կռուի մէջ և օգտաւէտ լինեն թէ իրենց և թէ իրենց շրջապատող հասարակութեան։*

*Ճիշտ է, դպրոցում առաջին տեղը պէտք է բռնի գրագիտութիւնը մի քանի առարկաների հետ, բայց եթէ գաղթականական դպրոցներում այդ ձևով տարուի գործը, դպրոցներն իրենց նպատակին լիակատար հասած չեն լինի,*

*Եւ եթէ այդ դպրոցներում աշակերտները տարիների ընթացքում միայն գրագիտութիւն պէտք է սովորեն և մի քանի տեսական, տարրական գիտութիւններ պէտք է իւրացնեն, և յետոյ այդ բեռով դպրոցից իջնելու են կեանքի փշոտ ասպարէզը, նրանց մեծ բարիք արուած չի լինի։*

*Ուսումնական գործը այդ սխալ ընթացքով է տարւում մինչև օրս և մեզանում ստորին հայոց դպրոցներում։*

*Ցանկալի չէ, որ գաղթականական դպրոցներում կրկնուի նոյն սխալը։*

Այդ դպրոցներում աւարտողներից շատ քչերին է վիճակւում շարունակել իրենց ուսումն միջնակարգ դըպրոցներում, հազուագիւտ դէպքերում և բարձրագոյն դըպրոց մտնել. իսկ ահագին մասը կամ մնում է իր ծննդավայրում — գիւղերում, ուր մեծ մասամբ թողնում են պարզ, ազնիւ հողագործութիւնը և այլ տեսակ գիւղական աշխատանքները և բաց անում խանութ չարչիութիւն անելու համար, կամ ուղևորւում են մեծ քաղաքները և պրոլետարիատի շարքերը խտացնում։ Դրանով գիւղը ու գիւղացիութիւնը զրկւում են աշխատող ձեռքերից և փտում։

Այս ցաւալի երևոյթը տեղի կունենայ և Տաճկահայաստանում, երբ ժողովուրդը վերադառնայ իր վայրերը, եթէ ուսման գործը չըդրուի իրականութեանը համապատասխան հողի վրայ։

Երբէք չի կարելի հաշտուել և բաւարար համարել, որ այն հազարաւոր երեխաները, որոնց մի մասը պատըսպարուած է որբանոցներում, իսկ միւսը մասն էլ ապրում է իրենց ծնողների կամ բարեկամների հետ, յաճախեն դպրոց միմիայն գրագիտութեան և մի քանի սովորական առարկաներին ծանօթանալու համար։

Աւերուած հայրենիքը սպասում է շինարարների, նա կարիք ունի իսկական գիտակից մշակների, որ գիւղեր ու քաղաքներ վերականգնեն, որ դպրոցների հետ միասին գիւղատնտեսութիւն ու արհեստներ տարածեն և զարգացնեն։

Միմիայն այս տեսակ պատրաստուած մշակներով, այս տեսակ գիտակից ձեռքերով հնարաւոր կը լինի իրագործել բոլորիս համար փափագելի հայրենիքի վերաշինութեան մեծ գործը։

Պարզ է, որ գաղթականական դպրոցները պէտք է այնպիսի հիմունքների վրայ դնել, որ նրանք կարողանան տալ ժողովուրդին այն, ինչ որ մանաւանդ սկզբներում, վերաշինութեան օրերում, նրա ամենազգալի կարիքն է լինելու։

Ժողովուրդին հարկաւոր կը լինեն՝ պատրաստուած ուսուցիչներ բացուելիք դպրոցների համար, հարկաւոր կը լինեն գիւղատնտեսներ գէթ տարրական գիւղատընտեսական գիտութեամբ, հարկաւոր կը լինեն զանազան տեսակ արհեստաւորներ։

Ուստի գաղթականական դպրոցներում յառաջադէմ և ընդունակ աշակերտներին պէտք է հնարաւորութիւն տրուի շարունակելու իրենց ուսումը մեր միջնակարգ դպրոցներում. այդ դպրոցների դռները պէտք է բաց լինեն նրանց առաջ, իսկ նրանց նիւթականի հոգատարութիւնը ապահոված՝ հասարակութեան կողմից։

Գաղթականական դպրոցների գէթ մեծամասնութեան մէջ պէտք է մտցնել տարրական գիւղատնտեսութեան ուսմունքը, թէ ինչպէս մշակել դաշտը, այգին, ագարակը, ծանօթացնել մեղուաբուծութեան, շերամապահութեան և գիւղատնտեսական այլ ճիւղերի հետ, հիմնել, ուր հնարաւոր կը լինի, փորձնական դաշտեր։

Դպրոցներին կից պէտք է հիմնել արհեստանոցներ զանազան տեսակ արհեստներ սովորեցնելու համար։ Գիւղատնտեսութիւնը և արհեստագիտութիւնը այնքան մեծ տեղ են բռնելու սաների ապագայ կեանքում, որ եթէ այդ նպատակի համար նոյն իսկ հարկաւոր լինի կրճատել ուսումնական մասը, չը պէտք է կանգ առնել դրա առաջ, պէտք է կրճատել։

Աշխատանքի սկզբունքը առհասարակ լայն ծաւալով պէտք է մտցնել թէ որբանոցները և թէ գաղթականական դպրոցները։

Միայն այս տեսակ կրթութեամբ և ուսումով գաղթականական դպրոցները կը ստեղծեն իրենց սաներից առողջ, լուսամիտ և ազնիւ տարր։

Պէտք է անխախտ ձգտել այդ նպատակին։

Ս. Յ.

# Համաշխարհային պատերազմը

## ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Այս ռազմաբեմից վերջին շաբաթս գրեթէ ոչ մի տեղեկութիւն չի ստացուած։

Միակ պաշտօնական հաղորդագրութիւնը, որ մի շաբաթուայ ընթացքում մեզ է հասել՝ արաբական ապստամբութեանն է վերաբերում։ Արաբները պաշարելով Մեքքայից հարաւ-արևելք գտնուող Տայի աւանը՝ ստիպել են տեղական թիւրք պահակազօրքին, որ բաղկացած էր 50 սպայից, 1809 ասկեարից, անձնատուր լինել։ Բացի այս գերիներից, ապստամբների ձեռքն է ընկել նաև 9 տաճկական թնդանօթ։

## ԱՒՍՏՐՕ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Ռուսական ճակատում այս շաբաթ կատաղի կռիւներ տեղի ունէին Զոլոտայա-Լիպայից արևմուտք, Բրոդի-Կրասնո գծի վրայ և Բրժէզանից հարաւ։ Չնայած որ թշնամին կատաղի դիմադրութիւն է ցոյց տալիս, ռուսները գերել են այս կռիւներում 6896 զինուոր և 171 սպայ։ Ռազմաճակատի հիւսիսային գծերում, մանաւանդ Ռիգայի արևմուտք գերմանացիներն անզօր փորձեր էին անում առաջ խաղալու, բայց ռուսական կրակը, որի մասին գերմանացիք վերջին ժամանակներս բաւական գովեստով են խօսում, ամեն անգամ ստիպում էր թշնամիներին յետ քաշուել դէպի իրենց խրամատները։

Այս շաբաթ նշանակալից չափեր էին առել յատկապէս օդային ճակատամարտները. ռուսական սաւառնակները մի քանի անգամ ամբողջ տորմիղով կռուի են բռնուել թշնամու «Ալբատրոսների» հետ և նրանց փախցրել։

Ֆրանսական ճակատում այս շաբաթ գերմանացիները եռանդուն յարձակումներ էին գործում ֆրանսական դիրքերի վրայ Կոմբլի շրջանում։ Սակայն նրանց բոլոր յարձակումները ֆրանսացիք յետ են մղել մեծ կոտորած տալով թշնամուն և նրանից գերելով 1500 մարդ։

Վերդէնի շրջանում այս շաբաթը խաղաղ անցաւ։

Անգլիական ճակատում դաշնակիցները շարունակում են իրենց առաջխաղացութիւնը Կոմբլի շրջանում։ Այս շաբաթուայ կռիւներում նրանք գերել են աւելի քան 4300 գերմանացի և աւար վերցրել 27 թնդանօթ, 194 գնդացիր, 40 խրամատային հրանօթ և բազմաթիւ հրացաններ։

Իտալական ճակատում փոփոխութիւններ չեն եղել։

Ռումանական ճակատի հիւսիսային և հիւսիս-արևմտեան գծերի վրայ յամառ կռիւներ տեղի ունէին այս շաբաթ։ Առանձնապէս կատաղի յարձակումներ է գործում թշնամին Ջիուի հովտում և Պետրոշէնի մօտ։ Գուրգիու և Գարիցա քաղաքների մօտ ռումանները զգալի ջարդ են տուել աւստրո-հունգարներին խլելով նրանցից 4 գնդացիր և գերելով 14 սպայ և մօտ 1400 զինուոր։

### ԲԱԼՔԱՆԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Սալոնիկի ճակատում այս շաբաթ կատաղի կռիւներ տեղի ունեցան Կայմակչալանի պատճառով։ Բուլղարները կերկնակի, եռակի յարձակումների միջոցով աշխատում էին վերագրաւել գէթ Կայմակչալանի բարձունքները, բայց շարունակ յետ էին մղւում սերբերից։ «Դեռևս այսպիսի արիւնահեղ պատերազմ չէ եղել. ռազմի դաշտը ծածկուած է բուլղարների դիակներով— ասում է Սերբիայի պաշտօնական հաղորդագրութիւնը։ Առաջուայ պէս այս շաբաթ էլ սերբերի գերած թշնամիների թիւը մի քանի տասնեակից չէ անցնում։

Ֆրանսական գծի վրայ բացի սովորական թնդանօթաձգութիւնից և հետախոյզ խմբերի գործողութիւններից աչքի ընկնող դէպքեր չեն եղել։

Անգլիական գծի վրայ թշնամին մի փոքր յետ է մղուած։ Ստրումից ոչ հեռու եղել են դաշնակիցները Կարաչաքոյ գիւղերը՝ գերելով մօտ 250 բուլղար։

Ալբանական ճակատից տեղեկութիւններ չեն ստացուած։

Դոբրուջայի ճակատը անցեալ շաբաթուայ պէս շարունակում է ամենաարիւնահեղ կռիւների ասպարէզը մնալ։ Այս շաբաթ այստեղ դաշնակիցների գործերն աւելի յաջող էին գնում քան անցեալ շաբաթ։ Ռումանները Տուրտուկայի և Ռուշչուկի միջև անցել են Դանուբ գետը և դուրս եկել Տուրտուկայի շրջանում գործող բուլղարական զօրքերի թիկունքը։ Դոբրուջայի ամբողջ ճակատի վրայ յարձակումներ են գործում ռումանները և ռուսները։ Սկզբում թշնամու կենդրոնը և ձախ թևը, ապա նաև աջ թևը յետ են քաշւում դէպի երկրորդ կարգի ամրութիւնները։ Դոբրուջայի կռիւներն աչքի են ընկնում իրենց արտակարգ դաժանութեամբ։

Ըստ երևոյթին թշնամու զօրքերն աստիճանաբար կենտրոնանում են այս ճակատի վրայ, որպէսզի ռումաններին թիկունքից վճռական հարուած հասցնեն։ Նոյնիսկ թիւրքերը 10000 զօրք են տեղափոխել այս ճակատը։

* * *

# Ներքին տեսութիւն

## ՄԵԾ ՄԻՏԻՆԳ ԼՕՆԴՕՆՈՒՄ Ի ՆՊԱՍՏ ՀԱՅԵՐԻ

Յայտնի է արդէն, թէ ինչպիսի հետաքրքրութեամբ էր վերաբերւում դէպի գաղթականների վիճակը այն յատուկ պատգամաւորութիւնը, որը Լօնդօնի Լորդ-մէրի նախագահութեամբ կազմուած ֆօնդի կողմից վերապատուելի Հարօլդ Բեքստօնի ղեկավարութեամբ եկած էր Կովկաս և Հայաստան՝ ուսումնասիրելու գաղթականների դրութիւնը և նրանց ցոյց տուած օգնութեան կազմակերպութիւնը։ Ամենայն բարեխղճութեամբ իր ստանձնած առաքելութիւնը կատարելուց յետոյ՝ Հ. Բեքստօնը իր ընկեր Հօջկինի հետ երկու ամիս առաջ վերադարձաւ Լօնդօն։ Եւ ահա անմիջապէս նրանց գալուց յետոյ՝ ի պատիւ նրանց Լօնդօնի երկու գլխաւոր հայասէր կոմիտէները, այն է Լորդ-Մէրի ֆօնդի կոմիտէն և Անգլօ-Հայկական կոմիտէն օգոստոսի 2—15-ին պարլամենտի դահլիճներից մէկում կազմակերպում են մի մեծ միացեալ միտինգ։

Լօնդօնում լոյս տեսնող «Ararat» ամսաթերթը արձանագրում է միտինգի մանրամասնութիւնները, որ և թարգմանելով տալիս ենք հայ ընթերցողներին։

Միտինգին նախագահում էր պ. Անեւրին Վիլլիամսը, որը յիշեալ երկու կոմիտէների նախագահն է։ Ներկայ էին նոյնպէս պարլամենտի անդամներ պ. Նօյէլ Բեքստօն և պ. Օ. Կօննօր։— Վերապ. Հ. Բեքստօնը համառօտ կերպով պատմեց իրենց ճանապարհորդութիւնից ստացած տպաւորութիւնները, խօսեց այն վերին աստիճանի սրտագին ընդունելութեան մասին, որ ցոյց են տուել իրեն և պատգամաւորութեան բոլոր անդամներին հայերը՝ թէ Ռուսաստանում և թէ Փոքր Ասիայում։ Թէև նրա տուած նկարագրութիւնը այն պայմանների, որ գոյութիւն ունին թէ Թիֆլիսում, և թէ Վանում։ Էրզրումում և այլ տեղերում, շատ կարճ էր, բայց բաւական էր, որպէս զի կոմիտէների անդամներին հնարաւորութիւն տար գաղափար կազմելու, թէ ինչ ուղղութեամբ և ինչ ծրագրով տարուել է և պէտք է տարուի տաճկահայերի նպաստի և վերաշինութեան խիստ կարևոր գործը։ Իր ճառը նա եզրափակեց մի քանի խօսքեր նուիրելով Ռուսաստանի և Հայաստանի քաղաքական դրութեանը, որը անկասկած դժուարին մի հարց է, և յատուկ խնդրեց խոյս տալ այդ մասին վաղաժամ հրապարակական վիճաբանութիւններից։

Յետոյ խօսեց պ. Հօջկինը, որը մասնաւորապէս կանգ առաւ իր ստացած տպաւորութիւնների վրայ պարսկահայերի և ասորիների մէջ, որոնց մէջ նա նկատում էր անսահման հաւատ դէպի Անգլիան, որը թէ ոյժ և թէ կամք ունի նրանց օգնելու և ազատելու իրենց անտանելի դրութիւնից։ Պ. Հօջկինը նոյնպէս հաստատեց Հարօլդ Բեքստօնի կարծիքը քաղաքական դրութեան դժուարութիւնների մասին, որոնք ոչ պակաս չափով ծագում են նրանից, որ ռուս պաշտօնեաները դրամադիր են կասկածով նայել ամեն տեսակի «պատգամաւորութիւնների» վրայ, որոնց կարող են քաղաքական նպատակների ծառայեցնել։

Դրանից յետոյ պ. Նօէլ Բեքստօնը համառօտակի պատմեց այն այցելութեան մասին, որ նա և դօկտոր Րօպլին Բրիւսը արել են Ամերիկային՝ նպատակ ունենալով համակրութիւն զարթեցնել դէպի հայերը և ապահովել նրանց նիւթական օգնութիւնը։ Նա խօսեց այն խանդավառ ոգևորութեան մասին, որով նա և նրա ընկերը ընդունուել են Միացեալ Նահանգների բազմաթիւ խոշոր քաղաքներում, և այն հրաշալի կազմակերպութիւնների մասին, որոնք Հայաստանին օգնութիւն հասցնելու նպատակով հիմնուած են այնտեղ թէ ամերիկացիների և թէ ամերիկաբնակ հայերի կողմից։

Կոմիտէների անդամներից ոմանք մի քանի հարցեր տուեցին, որոնց պատասխանեցին պ. Հ. Բեքստօնը և պ. Հօջկինը։

Միտինգի վերջում պ. Մոստիճեանը յուզուած և ոգևորուած խօսքերով հայերի անունից շնորհակալութիւն յայտնեց այն անձանց, որոնք այնպէս ազնուօրէն իրենց նուիրել են իր հայրենակիցների դատին, և արտայայտեց իր հաստատ հաւատը, որ մօտ ապագայում Հայաստանի ժողովրդի համար ծագելու է յուսոյ և խաղաղութեան արշալոյսը։

Յ. Բոչարեան

---

## ՕԳՆԵՑԷՔ ՉՔԱՒՈՐ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԻՆ

Ուսումնական տարին սկսուեց, ուսումնարանները բացուեցին և ահա՝ անթիւ երեխաներ բաղխում են Բարեգործական ընկերութեան դռները և խնդրում են ձրի ճաշ տալ նրանց։ Բայց...

ւանդ ընկերութիւնը հնարաւորութիւն չունի այս տարի իր ցանկացածին չափ բաւարարութիւն տալու նրանց։

Պատերազմը սկսուելու օրից, ընկերութեան խորհուրդը անյարմար գտաւ երեկոյթներ սարքել և զրկուեց իր եկամուտների գլխաւոր աղբիւրից, իսկ նուիրաբերութիւնները այժմս լինում են յատուկ նպատակի համար, գաղթականների և առհասարակ պատերազմից վնասուածների համար։ Սակայն ճաշարանը իր անհրաժեշտութիւնը չի կորցնում և չքաւոր ընտանիքների կեանքի մէջ մեծ դեր է խաղում։

Պէտք է տեսնել ձմեռը փոքրիկներին, թէ ինչպէս նրանք մեծ մասամբ առանց վերարկուների, դողալով ցրտից, կապտած երեսներով, մտնում են ճաշարանը և ագահութեամբ վրայ են ընկնում տաք կերակուրներին։

Շատերի համար ամբողջ օրուայ սնունդը միայն այդ ճաշն է. ինչ պիտի անեն նրանք հիմա, եթէ զրկուեն այդ միակ սընունդից։

400 հոգի ճաշողներից, խորհուրդը այս տարի կարող է ընդունել ձրի միայն 50 հոգու, իսկ մնացածների համար նշանակուած է 6 ռուբլի ամսական վճար, թէև իրեն ընկերութեանը նըստելու է մօտ 10 ռուբլի։

Չը նայած, որ ընկերութիւնը գինը շատ պակաս է նշանակել, այնուամենայնիւ դիմողներից մեծամասնութեան համար անմատչելի է նոյն իսկ այդ վճարը և շատերը դուրս կը մնան ճաշարանից և գուցէ զրկուեն նաև ուսումից։

Երկարատև քաղցածութիւնը, մանաւանդ մանկական հասակում, երբ աճում է մարմինը, շատ վտանգաւոր հետևանքներ է ունենում և առաջ է բերում զանազան վարակիչ հիւանդութիւններ։

Շատ ցանկալի է և մեծ բարեգործութիւն կը լինին կատարած մեր ունևոր անհատները, եթէ շտապեն վերցնել իրանց հաշուին աղքատ երեխաներ ձրի ճաշ տալու։

Ճաշարանը բաց է լինում և գործում է 8-8½ ամիս տարուայ ընթացքում, հետևապէս ամեն մի որդեգիրը կը նստի 50 ռ.։

Ընկերութեան գրասենեակը բաց է ամենայն օր և շնորհակալութեամբ ընդունում է նուիրաբերութիւնները։

Իշխ. Մ. Թումանեան

---

## Վ. Ա. ՌԺԵՒՍԿՈՒ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ ԿՈՎԿԱՍԵԱՆ ԶԵՄՍՏՒՈՅԻ ՄԱՍԻՆ

Սեպտեմբերի 14-ին Թիֆլիսում, պետ. Դումայի անդամ Վ. Ա. Ռժևսկին մի զեկուցում տուաւ Անդրկովկասում մտցուելիք զեմստւոյի մասին։ Ներկայ էին մեծ թուով հասարակական ու պետական նշանաւոր գործիչներ և զանազան հաստատութեանց ներկայացուցիչներ։

Վ. Ա. Ռժևսկին, որպէս Դումայի եկամտական յանձնաժողովի նախագահ և զեմստւոյական ռեֆորմի մասնաժողովի անդամ, ռուս պետական հասարակական շրջաններում որոշ կշիռ ունի. նա եկել է Կովկաս անձամբ մօտիկից ուսումնասիրելու կովկասեան զեմստւօյի հետ կապակցուած խնդիրները։

Կովկասում կատարած իր շրջագայութեան և ուսումնասիրութեան արդիւնքն այն է եղել, որ նա կազմել է մի որոշ կարծիք և համոզմունք, որ շատ կողմերով մօտենում է Կովկասում զեմստւօ մտցնելու համար եղած խորհրդակցութեան ընթացքում արտայայտուած փոքրամասնութեան տեսակէտներին։

Յարգելի զեկուցանողը նախ մանրամասնօրէն բացատրեց, թէ ինչ դրութեան մէջ է Ռուսաստանի զեմստւոյի ռեֆորմների խնդիրը։ 90 թուականի կանոնադրութիւնը ռուս հասարակութեան առաջադէմ խաւերի մէջ անպէտք է ճանաչուած։ Արդէն Պետ. Դումա է մտցուած մի օրինագիծ այդ կանոնադրութեան փոփոխութեան մասին։ Օրինագիծը քննուած է զեմստւային յանձնաժողովի մէջ և մերձաւոր նստաշրջանին կառաջադրուի Դումայի քննութեան։

—Երբ ես գալիս էի Կովկաս,—շարունակեց զեկուցանողը,—ինքս ինձ հարցում էի տալիս, թէ հնարաւոր է արդեօք Կովկասում զեմստւօ մտցնել։ Կովկասի մասին մեր ունեցած գաղափարը թոյլ չէր տալիս ինձ այս հարցումին դրական պատասխան տալ։ Մենք կարծում էինք, թէ Կովկասում ապրող բազմաթիւ ազգութիւնները զբաղուած են միայն իրար կոտորելով։ Բայց 5 շաբաթ այստեղ մնալուց յետոյ ես այն հաստատ համոզմանն եկայ, որ Անդրկովկասում որքան կարելի է՝ շուտ պէտք է մտցնել զեմստւօ։

Յետոյ, ես ինձ հարց էի տալիս, թէ նիւթական միջոց կա՞յ արդեօք Կովկասում զեմստւօ մտցնելու համար, ես տեղական զեմստւային հարկային սիստեմի հետ ծանօթանալուց յետոյ, եկայ այն համոզման, որ միջոցներ կան բաւական և ժողովուրդը կը տայ աւելին, երբ տեսնի, որ հաւաքուած գումարները ծախսւում են իրեն իսկ ժողովրդի օգտին իր ներկայացուցիչների ձեռքով։

Զեմստւային իրաւասուների ընտրութեան կարգի մասին զեկուցանողը վճռապէս դէմ է դասակարգային ընտրութիւններին։ Եթէ զեմստւօն տեղական ինքնավարութեան օրգան է, ապա նրա մէջ պիտի մասնակցեն անխտիր այն ամենքը, որոնք պարտաւորուած են հասարակական պարտաւորութիւններ կատարելու համար։ Ռուսաստանում ըստ 90 թուականի կանոնադրութեան գործում է կալուածային ցենզը։ Իսկ Կովկասում, ուր հողային յարաբերութիւնները չափազանց խճճուած են, ուր հարկատուների մեծամասնութիւնը չի կարող հաստատել իր հողատիրական իրաւունքը, հողային-կալուածային ցենզի մասին խօսել անկարելի է։ Կովկասի համար ամենայարմար ցենզը հարկայինն է, որը զեկուցանողն առաջարկում է սահմանել մէկ ռուբլի, որպէսզի հնարաւոր լինի զեմստւային աշխատանքների հրաւիրել կօօպերատիւ կազմակերպութիւնների դաստիարակած գործիչների լայն խաւեր։ Ռուսաստանում ցենզը բարձր լինելու պատճառով թշնամութիւն է տիրում զեմստւային և կօօպերատիւ հաստատութիւնների միջև։

Զեկուցողը դէմ է այժմ իսկ զեմստւային մանր միութիւն մտցնելուն։ Սկզբում նահանգական և գաւառական զեմստւօները փորձառութիւն և նիւթեր չունենալու պատճառով, կը դժուարանան իրենց իրաւասութեան սահմանները որոշել, իսկ մանր միաւորը կարող է ամեն բան խառնել։ Կանոնադրութեան մէջ պէտք է ասուած լինի միայն, որ գաւառական և նահանգական զեմստւօն իրաւունք ունի յետագայում մանր միաւոր ևս մտցնելու։ Պէտք է սահմանուի երկու միաւոր—բարձր և ստորին։ Բարձրը պիտի համապատասխանի նահանգի և շրջանների սահմաններին, իսկ ստորինը աւելի բարդ լինելով, ազատօրէն կարող է և չհամապատասխանել մի գաւառի սահմաններին։ Այս պատճառով ցանկալի է փոփոխել գաւառների սահմանները, բայց դա բարդ գործ է։ Երբ զեմստւօի գործունէութիւնը կարդարացնի գաւառական հողամասերի նոր բաժանումը, այն ժամանակ կարելի կը լինի փոխել վարչական սահմանները։ Նկատի ունենալով, որ զեմստւօի գործունէութիւնը կոլլեգիալ բնոյթ ունի, հողամասը պէտք է լինի այնպէս, որ ամեն մի յատուկ գործի համար կարելի լինի ունենալ մի քանի աշխատաւորներ։ Առողջութեան համար ցանկալի է հաստատել միատեսակ աշխատանք։ Ուստի նպատակայարմար է հաստատել միատեսակ կուլտուրական կենցաղական և նոյն իսկ ազգային պատկեր ունեցող միաւորներ։ Այս կողմից խիստ աչքի է ընկնում կենցաղական տարբերութիւնը Երևանի նահանգի առանձին գաւառների սահմաններում։

Դառնալով ազգայնական խնդրին, զեկուցանողն ասաց, որ ինքը Կովկասում ազգութիւնների միջև թշնամութիւն չի գտել, այլ որոշ պառակտում է գտնում մի կողմից հայերի ու թուրքերի և միւս կողմից հայերի և վրացիների միջև։ Հայ-վրացական պառակտումը զեկուցանողին խիստ յիշեցնում է դասակարգային

պառակտումը Ռուսաստանում։ Դա հողագործ դասակարգի ընդհարումն է առևտրա-արդիւնաբերական դասակարգի հետ, ղեկուցանողի կարծիքով։ Երբ վրացիներն ևս իրենց բուրժուազիան ունենան, հայ-վրացական այժմեան յարաբերութիւնների ամբողջ սրութիւնը կը փոխադրուի վրաց ազգային կառքի սահմանները։ Ուրիշ բան է հայ-թուրքական պառակտումը։ Այստեղ, ղեկուցանողի կարծիքով, իրար են բախւում երկու տարբեր կուլտուրաներ, որոնք շօշափման ընդհանուր կէտեր չունեն։ Ի՞նչպէս պէտք է մեղմել այդ պառակտումը։ Գաւառական զեմստւօները կը լինեն այն ասպարէզը, ուր այդ պառակտումը աւելի սուր բնոյթ կըստանայ։ Ուստի ղեկուցանողին թւում է, որ գաւառական զեմստւօի սահմանները որոշելիս անհրաժեշտ է նկատի առնել տերրիտորիայի ոչ միայն տեղագրական և կենցաղագրական միատեսակութիւնը, այլև աշխատել, որ սահմանները հնար եղածին չափ ընդգրկէին նաև ազգային խմբակցութիւնները։

---

## ԵՐԿՈՒ ԱՄԻՍ ԳԱՂԹԱԿԱՆՆԵՐԻ ՇՐՋԱՆՈՒՄ

II.

Կարսի նահանգի Նախիջևանի շրջանի գիւղերում տեղաւորուած փախստական-գաղթականների ցուցակը 1916 թ. յուլիսի 26-ից մինչև օգոստ. 16-ը։

| | Գիւղերի անունները | Ընտանիք | Հոգի | Արական | Իգական | 1-15 տ. տղ. | 1-15 տ. աղ. | Ընդամենը |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Տիգոռ | 36 | 154 | 77 | 77 | 41 | 33 | 74 |
| 2 | Ազարակ | 45 | 116 | 58 | 58 | 31 | 22 | 53 |
| 3 | Ծպնի | 41 | 166 | 79 | 87 | 30 | 31 | 61 |
| 4 | Զոչի | 38 | 215 | 100 | 115 | 39 | 41 | 80 |
| 5 | Ջալալ | 33 | 218 | 57 | 61 | 21 | 29 | 50 |
| 6 | Բեիկ | 7 | 41 | 19 | 22 | 12 | 8 | 20 |
| 7 | Ղասաբեանի գիւղ | 18 | 61 | 25 | 36 | 15 | 17 | 32 |
| 8 | Կողբեցու գիւղ | 13 | 58 | 25 | 33 | 16 | 11 | 27 |
| 9 | Կնդօներ. Վաղարշ. գ. | 26 | 99 | 44 | 45 | 16 | 20 | 26 |
| 10 | Բաղարան | 11 | 65 | 30 | 35 | 13 | 18 | 31 |
| 11 | Նախիջևան | 84 | 423 | 178 | 245 | 82 | 90 | 172 |
| 12 | Մաւրակ | 29 | 112 | 61 | 61 | 35 | 19 | 54 |
| 13 | Գիւլհէյրան | 2 | 12 | 7 | 5 | 4 | 2 | 6 |
| | | 363 | 1640 | 760 | 890 | 355 | 341 | 696 |

Ինչպէս երևում է տախտակից Նախիջևան գաւառակի 13 հայ գիւղերում ապրում են 363 գաղթ. ընտանիք 1640 բնակչութեամբ, որոնցից 760-արական, 790 իգական, 1—15 տարեկան հասակ ունեցող արականների թիւն է 355, իսկ իգականների 341. ընդամէնը՝ 696.

## ՆԱԽԻՋԵՒԱՆԻ ՇՐՋԱՆԻ ԳԱՂԹԱԿԱՆՆԵՐԻ ՎԻՃԱԿԸ

Իմ շրջագայութեան ժամանակ ես այն տպաւորութիւնն ստացայ, որ Նախիջևանի գաղթականութիւնը աւելի տանելի պայմանների մէջ է գտնւում քան թէ Շիրակինը։ Շիրակի շրջանում գիւղ չըկար, որ լիովին բաւարարուած լինէր պետական նպաստի կողմից։ Ամեն գիւղում ես ստիպուած էի նպաստ չըստացող գաղթականների համար օրինաւոր ընտանեկան ցուցակներ կազմել և ներկայացնել ուր հարկն է։ Բայց Նախիջևանի շրջանում գործը շատ լաւ դրուած է։ Չըկար մի գաղթական ընտանիք, որ ժամանակին իր նպաստը ստացած չըլինէր և ես ոչ մի տեղ ոչ մի գաղթականի բերանից չը լսեցի, թէ նրան նպաստից զրկել են։ Պարտաճանաչութիւնը, բարեխղճութիւնը և դէպի թշուառը ունեցած կարեկցութիւնն է գործը այսպէս կարգաւորել։ Պէտք է հրապարակով շնորհակալութիւն յայտնել շրջանի պրիստաւ Իբրահիմ բէկին և բժիշկ Արմ. Աւթանդիլեանին, որոնք շատ լաւ են վերաբերւում դէպի գաղթականները և ձեռքի եկած օգնութիւնը չեն զլանում։ Սրանց շնորհիւն է, որ նպաստի գործը խառնաշփոթ դրութեան մէջ չէ։

Առողջապահական տեսակէտից Նախիջևանը ապահով է. Քաղաքների միութիւնը Տիգոռում ունի իր հիւանդանոցը, իսկ Զոչի գիւղում հիւանդանոցի բաժանմունքը։ Տարափոխիկ հիւանդութիւն եթէ կայ, այդ տիֆ հիւանդութիւնն է, գաղթական հիւանդները թւով շատ աննշան են։ Տիֆով հիւանդները աւելի շատ քրդերից են։ Նախիջևանի շրջանի ազգաբնակութիւնը մեծ մասամբ բաղկացած է քրդերից։

Բացի զանազան որբանոցներում տեղաւորուած որբերից՝ կան բազմաթիւ որբեր նաև գիւղերում, որոնք ապրում են իրենց ազգականների մօտ և կամ հէնց այնպէս իրենց գլխու, գտնուելով իրենցից մեծ քոյրերի և եղբայրների հսկողութեան տակ։

Այս նիւթապաշտ ժամանակներում երբեմն հանդիպում ես այնպիսի մխիթարական երևոյթների, որոնք մարդու չափազանց լաւատես են դարձնում, մտքումդ ասում ես, «այո, դեռ մարդիկ խիղճ ու կարեկցութիւն ունին դէպի թշուառները, խղճի տէր մարդիկ կան գիւղերում, որոնք իրենց հարազատների նման պահում են հայ որբուկներին և մտածում նրանց ապագայի մասին։ Մտնում եմ Ծպնի գիւղը։ Մի գիւղացի երիտասարդ գրկած մի հինգ տարեկան գաղթական աղջիկ բերում է ցուցակագրելու։ Երիտասարդին առաջարկում եմ—քանի որ այդ աղջիկը հայր ու մայր չունի, բոլորովին որբ է, տուէք ուղարկեմ որբանոց։—Ինչ էք ասում, պ. Լիազոր, մի՞թէ կարելի բան է այս աղջկից ես բաժանուեմ։ Գիտէք ինչ չարչարանքով եմ սրան բերել։ Երբոր обозъ էի գնացել Մանազկերտի մօտ, մի ձորում գտայ այս աղջկան։ Ծաղիկ հանեց և ես երկու շաբաթ սրան թևերուս վրայ պահեցի և մեծ չարչարանքով հետս բերի տուն։ Սա իմ հարազատ աղջիկն է։ Ես էլ, կինս էլ սրանից չենք կարող բաժանուել, ասաց ու աղջկան նորից տարաւ։ Բաղարան գիւղում գաղթականներին ցուցակագրելիս, ներս է մտնում սենեակ տեղացիներից մէկը՝ Գրիգոր անունով, և յայտնում է, որ իրեն մօտ ապրում են երեք որբ աղջիկներ, նրանց ստացած պետական նպաստը ինքը հաւաքել է և դարձրել 200 ռ։ Մաւրակ գիւղում դարձեալ մի բարեխիղճ մարդ իր մօտ ապրող որբերի նպաստը տնտեսել է և դարձրել 130 ռ. եղան և այդպիսի դէպքեր ուրիշ գիւղերում։

## ՏԵՂԱՑԻՆԵՐԻ ԳԱՂԹԱԿԱՆՆԵՐԻ ՀԵՏ ՈՒՆԵՑԱԾ ՓՈԽ-ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Արդար լինելու համար պէտք է ասեմ, որ երկարատև պատերազմը, կենսական մթերքների ծայրայեղ թանգութիւնը, աշխատող ձեռքերի պակասութիւնը հայ գիւղացիութեան համար ստեղծել են դժուարին կացութիւն և արտաքոյ կարգի պայմաններ։

Բնիկ գիւղացիները, հողի. ջրի, տուն-տեղի տէր մարդիկը չեն կարողանում իրենց ապրուստը հայթայթել։ Հայ գիւղը աղքատ է.ու սոված է և ուղղակի անտանելի է գիւղի չքաւոր դասակարգի դրութիւնը։ Աշխատող ձեռքերը գնացել են և գնալու են պատերազմ, աւելորդ բան չունեն ծախելու, որ իրենց ապրուստը ճարեն։ Այսպիսի հանգամանքներում ի հարկէ գիւղացիութիւնը չի կարող այն չափով օգնութեան գալ գաղթականներին, ինչ չափով որ նա կարող էր օգնել նրանց ուրիշ բարեյաջող պայմաններում։ Բայց չընայելով այսպիսի բացառիկ պայմաններին, դարձեալ հայ գիւղը ձեռքից եկածի չափ օգնել է գաղթականներին, նամանաւանդ նրանց նոր եկած ժամանակ։ Ա-

մեն մի հայ գիւղ ապաստան տալով գաղթականներին առաջին տարին նրանցից բնակարանի վարձ չի ստացել։ Բայց հիմա տեղացիների և գաղթականների յարաբերութիւնները մի քիչ փոխուել են շնորհիւ բնակարանային հարցի։ Տնատէրերը բնակարանի վարձ են պահանջում, պատճառաբանելով որ գաղթականները պետութիւնից ստանում են բնակարանի վարձ։

Ճիշտ է, ստանում են, բայց ինչ չափով։ Վերջին կարգադրութեամբ աշխատանքի ընդունակները 15—55 տարեկան հասակ ունեցող արականները չեն ստանում պետական նպաստ և բնակարանի վարձ, սա բացայայտ իրողութիւն է։ Մնացածները չընայած սեռին և հասակին ստանում են բնակարանի վարձ, իւրաքանչիւր անհատը ստանում է թէ լուսաւորութեան, թէ վառելիքի, թէ բնակարանի և թէ սապնի համար միմիայն 1 ռ.—10 կ. ամսական։ Նաւթի փութը գիւղերում ծախւում է ութ կոպէկով, մի տուփ լուցկին ութ կոպէկով. մի հատ աթարը 3—5 կ. Սապնի փութը 70—80 կ.։

Հինգ հոգուց բաղկացած գաղթական ընտանիքը ամսական կստանայ վառելիքի և բնակարանի վարձ 5 ռ. 50 կ. իսկ դրա դիմաց կը ծախսի ամսական՝ 5 փութ նաւթի համար—40 կ. երեք տուփ լուցկու համար՝ 24 կ. երեք հարիւր աթարի 9 ռ. 3 ֆ. սապնի 2 ռ., ընդամենը 11 ռ. 64 կ. էլ ո՞րտեղից տայ բնակարանի վարձ, քանի որ վեց ռուբ. պակասում է։

Բայց չնայած այդ հանգամանքին, գաղթական ընտանիքը բնակարանի վարձ վճարում է 1—3 ռ. պետական նպաստ ապրուստի համար օրական ստանում է միայն 20 կ. ամսական վեց ռ.։

Այս էլ պէտք է ասեմ, որ գիւղերում ազատ բնակարաններ չըկան գաղթականների համար, եղածները բռնուած են և շատ գիւղերում գաղթականներին օգնող մարմինները ընտրելիս՝ յայտնում էին, որ այլևս իրենց մօտ նոր գաղթականներ չ'ուղարկեն, որովհետև ազատ բնակարաններ չըկան։

Հ. Կ. Կոմիտէի լիազօր Ա. Թ. Խնկոյեան

---

## ԴՊՐՈՑԱԿԱՆ ԽՈՀԵՐ

Ո՞վ կարող է ուրանալ հայ դպրոցի նշանակութիւնը, նրա բարգաւաճման ու ծաւալման անհրաժեշտութիւնը։ Սակայն ո՞վ կարող է ուրանալ, որ ներկայումս հայ դպրոցը փոխանակ յառաջխաղացման բարձալի ճամբան բռնելու, յետ-յետ է գնում։ Չկայ առաջուայ ոգևորիչ թափն ու կորովը։ Ներկայ ծանր օրերը լքման ու յուսահատութեան դուռ են բաց արել մեր գիւղական համայնքի առաջ։ Քաղաքներն էլ իրենց վերջի ճիգերն են թափում։ Չկան սրտացաւ, ժողովրդի սրտին մօտիկ առաջնորդներ, թեմական տեսուչներ։ Ահա քանի՜ տարի է, ինչ Ղարաբաղի, Աստրախանի և Քիշինեւի պէս հսկայ թեմերը զուրկ են կրթական գործի հսկիչ-տեսուչներից։ Լայնածաւալ Թիֆլիսի թեմի տեսուչ պ. Տէր-Աւետիքեանը արդէն հրաժարուելու վրայ է, շնորհիւ վատ պայմանների։ Գործի մէջ կենսունակ առաջնորդ Մեսրոպ եպիսկոպոսն ահա հեռացաւ Թիֆլիսի նման մեծ թեմից։ Հոգաբարձուների իներտ և անփոյթ գործունէութիւնը, ուսուցիչների հանդէպ վերին աստիճանի մատների արանքով վերաբերումը և նրա ողորմելի վարձատրութիւնը շատ արժանաւոր ուսուցիչներին հեռու փախցրին։

Այժմ հրապարակը մնացել է անփորձ, անպատրաստ և մեծ մասամբ թերուս օրիորդների, որոնք թեթև տաշեղի պէս լողում են առանց իմանալու թէ ուր։ Հարկաւոր են արմատական միջոցներ, որպէսզի հայ դպրոցն ու հայ ուսուցչութիւնը կանգնի իր նախկին վայելուչ բարձրութեան վրայ։ Հարկաւոր է ներկայումս վերսկսել «Նոր Դպրոցի» հրատարակութիւնը, որպէսզի անփորձ, սկսնակ ու թերուս ուսուցչին տայ հարկաւորը, լինի նրա ուղեցոյցը։ Եթէ ներկայ ծանր օրերս հնարաւորութիւն չեն տալիս հրատարակելու սեփական մանկավարժական օրգան, ապա որքան լաւ կլինէր, որ մեր միակ շաբաթաթերթ «Համբաւաբերը», որ մուտք է գործում գրեթէ բոլոր գիւղական դպրոցները, օր առաջ ստանձնի լրացնելու մասամբ այդ աչքի զարնող պակասը։ Որքան օգտաւէտ ու արդիւնաւոր պիտի լինի, եթէ նա բանայ «Մանկավարժական» և «Դպրոցական» բաժիններ, ուր մեր մանկավարժները իրենց գիտական գրուածքներով շատ բան կարող են սովրեցնել մեր սկսնակներին։ Դրանով Հ. Բ. Ընկերութիւնը մասամբ կը նպաստի դպրոցների առաջխաղացման գործին, որի համար տարեկան տասնեակ հազարներ է ծախսում։

Ուրեմն ժամանակ է, որ «Համբաւաբերը» *) բանայ այդ կարևոր բաժինները, զարկ տայ այդ ուղղութեամբ եղած աշխատանքներին և մասամբ վերացնի մանկավարժական թերթի բացը։

Ա. Տօնեան

---

## ԳԱՒԱՌ

### ԿԱՐՍԻ ՈՐԲԱՆՈՑԸ

ԿԱՐՍ. Կարսի որբանոցում այժմ կան 40 որբեր, մեծ մասամբ հաւաքուած Խնուսի, Բասէնի և Ալաշկերտի կողմերից, 16-ը աղջիկ՝ իսկ 24-ը մանչ։ Որբանոցը բացուած է 1915 թուի նոյեմ. 21-ին։

Որբանոցը կառավարւում է ներքին պաշտօնէութեան և հոգաբարձութեան կողմից. ներքին պաշտօնեաներն են՝ կառավարչուհին, տնտեսը, խոհարարը, սեղանապետը և երկու մայրապետները, բոլորը 6 հոգի։ Հոգաբարձութիւնը բաղկացած է 6 անդամից՝ 3-ը ընտրուած Կ. Հ. Բ. Ընկ. Կարսի վարչութեան կողմից, 2-ը՝ տեղիս կանանց ընկերութեան, և 1-ը՝ տեղիս երիտասարդական միութեան կողմից։

Որբանոցը ունի իր դպրոցը ուսուցչական կազմով, որտեղ սովորում են դպրոցական տարիք ունեցող սաները՝ 32 հոգի։

Իւրաքանչիւր որբի ամսական զուտ սննդի ծախսն է 11,32 ռ. իսկ ամսական ամբողջական ծախսը՝ 29,62 ռ.։ 40 որբի ամսական ընդհ. ծախսն է 1184,90 ռ.։

---

ԱՇՏԱՐԱԿ. 17 սեպտեմբերի, Աշտարակցու ապրուստի միակ աղբիւրը խաղողն է, որը այս տարի ևս ենթարկուեց անողոք բնութեան աւերածութեանը։ Անցած երկու տարիներում մեր ժողովուրդը հազար ու մի զրկանքներ կրելով, սրանից-նրանից պարտք վերցնելով հազիւ-հազ կարողացաւ պաշտպանել իր գոյութիւնը, իսկ այս տարի նա ինչպէս պիտի կարողանայ ապրել, երբ չորացել է ապրուստի միակ աղբիւրը։

Արդէն սկսուել է խաղողաքաղը։ Ժողովուրդը տուն է բերում այգիներից «ըմբռ» և «չոռ» հիւանդութիւններից սևացած խաղողը։ Ազատուած խաղողն էլ չի ծախւում, նախ նրա համար, որ գինու տակառներ չկան և երկրորդ, որ տեղիս խոշոր վաճառականները լուրեր են տարածում, թէ գինու արտահանութիւնը Ռուսաստան արգելուած է, այսպիսով ժողովուրդը ստիպուած է լինում ծախելու շատ էժան գնով իր խաղողը։ Արդէն աշուն է. մինչև հիմա ցանք անող չի եղել և ինչպէս կարող են ցանք անել, երբ ուտելու հաց անգամ չունեն և ցորենի փութն էլ ծախ-

---

*) «Համբաւաբերի» էջերը միշտ բաց են եղել և կը լինեն մանկավարժական ուղղութեամբ եղած լուրջ և օգտաւէտ աշխատութիւնների առջև։ Մընում է միայն, որ մեր պատրաստուած մանկավարժները աշխատեն ու լրացնեն ակնարկուած բացը։ Ծանօթ. խմբ.

ւում է 7 ռ. այն էլ ձեռք չի ընկնում։ Այստեղ նաւթ չկայ և եղածն էլ ծախւում է ֆունտը 50 կ.։ Այսպէս մեր խեղճ ժողովուրդը հեծում է կարիքի ծովում։ Սովի ուրուականը սարսափեցնում է մեր ժողովուրդին, առաւել ևս նրանց, ովքեր օրավարձով են հայթայթում իրենց ընտանիքի օրական պարէնը։

Անհրաժեշտ է, որ մեր ընկերութիւնները միացեալ ուժերով ալիւր և ցորեն ներմուծեն այս գիւղը, որով ազատած կը լինեն խեղճ ժողովրդին սովի ճիրաններից։

Հ. Բ. Գնունի

---

ԴԻԼԻՋԱՆ. Իշխ. Մ. Թումանեանի նախաձեռնութեամբ Դիլիջանի տաճկահայ որբերը այս ամառ ժողովել են բժշկական բոյսեր զինուորների կարիքների համար։

Երեխաները, նրանց ուսուցիչ Տ. Շահբազեանի ղեկավարութեամբ մեծ հաճոյքով գնում էին սարերը փնտռելու հարկաւոր բոյսեր, որ խմբով բերում չորացնում էին։

Մինչև այժմ գտած են 5 տեսակը, որոնցից պատրաստուել են շատ տարածուած դեղեր։

Ժողոված, չորացնելուց յետոյ դարսուեցին 11 արկղի մէջ, ընդհանուր քանակութեամբ 8 փութ և ուղարկուեցին Թիֆլիս բժշկական բոյսեր ժողովող մարմնի լիազօրին, որը գոհունակութիւն յայտնեց երեխաների ջանասիրութեան համար և առաջարկեց իշխ. Մ. Թումանեանին շարունակել այդ գործը աւելի լայն հիմունքների վրայ։

Լիազօրը խոստացաւ նոյնիսկ սերմեր տալ և ցուցմունքներ անել, որպէսզի ցանուի Դիլիջանում մի քանի շատ կարևոր բոյսեր, որ դժուար է գտնել վայրենի դրութեան մէջ։ Հաւանական է, որ մօտ օրերս Դիլիջանում կը սկսուեն նախնական աշխատանքներ իրագործելու այդ ծրագիրը։

# Արտաքին տեսութիւն

## ՅԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆՆԵՐ ՅՈՒՆԱՍՏԱՆՈՒՄ

Կոստանդին թագաւորի անձնական ռէժիմը վերջ ի վերջոյ կանգնեցրեց յոյն հայրենասէրներին յեղափոխութեան դիմելու անհրաժեշտութեան առաջ։ Համոզուելով, որ Կալոգերոպուլոսի նորակազմ կառավարութիւնը ոչ այլ ինչ է, բայց եթէ մի կամակատար գործիք թագաւորի ձեռքին՝ Վենիզելոսն ու իր համախոհները վճռեցին ժողովրդի գործօն աջակցութեան դիմել՝ երկիրը իր օրհասական վիճակից դուրս հանելու համար։

Աթէնքի ժողովրդի վրայ այս գործում յոյս դնել չէր կարելի, որովհետև նրա մէջ ամեն ձևի ու տարազի տակ վխտացող գերման գործակալները Կոստանդին թագաւորին համակրող յոյն պաշտօնեաների հետ միասին հասարակական կարծիքն, ինչպէս հարկաւորն է, կազմակերպել էին։ Պէտք էր դիմել Աթէնքից դուրս գտնուած ժողովրդին, որ համեմատաբար զերծ է մնացել գերմանական պրոպագանդի ճիրաններից։ Եւ Վենիզելոսն այդպէս էլ արաւ։ Նա անցեալ շաբաթ ճանապարհ ընկաւ դէպի կղզիները և այնտեղից ուղղեց իր մարտակոչը Կոստանդին թագաւորին և իր համհարզներին։

Գրեթէ ամբողջ Կրէտէն միաձայն արձագանք տուեց Վենիզելոսի, կրետական վերջին շարժումների այդ անուանի պարագլխի կոչին։ Կանէայում կազմուեց մի ժամանակաւոր կառավարութիւն, որ պէտք է իր շուրջը համախմբէ ներկայ քաղաքական կուրսի դժգոհ տարրերին։ Յեղափոխական կառավարութիւնը մի քանի օր առաջ հետևեալ կոչն է ուղղել յոյն ժողովրդին. «Բաժակը լցուած է. Թագաւորի անձնական քաղաքականութեան հետևանքով Յունաստանը կորցրեց իր բարեկամներին և ընկաւ թշնամիների գիրկը։ Ազգային ամբողջութիւնը վերականգնելու ազգը վերահաս մահից փրկելու համար անհրաժեշտ է հանդէս գալ Սերբիայի և հովանաւորող պետութիւնների հետ միասին՝ խորտակելու Գերմանիայի հեգեմոնեան Եւրոպայում և Բուլղարիայինը Բալքաններում։ Մենք երջանիկ կըզգանք մեզ, եթէ թագաւորը վերջին րոպէին որոշի ազգային ուժերի գլուխն անցնել, բայց քանի որ այդ չկայ՝ ժողովուրդն ինքը պէտք է միանայ դաշնակիցներին։ Սրա համար մենք ստանձնում ենք ժողովրդից մեզ վրայ դրուած պարտականութիւնները և խնդրում ենք ամբողջ Յունաստանին նեցուկ լինել մեզ։ Երբ պետութիւնը դաւաճանում է իր պարտականութիւններին՝ ազգը պիտի կատարի իր պարտքը»։

Այս ազդու կոչը, ինչպէս սպասելի էր, խոր տպաւորութիւն է թողել ազգաբնակութեան բոլոր խաւերի վրայ։ Նրան առաջին արձագանք տուողը եղաւ Սալոնիկի ազգային ինքնապաշտպանութեան կոմիտէն՝ յայտարարելով որ նա ենթարկւում է ժամանակաւոր կառավարութեանը և իր զինուորական ուժերը դնում նրա տրամադրութեան տակ։ Նրանից յետոյ մէկը միւսի յետևից արտայայտուեցին Քիոսը, Մետելինէ և էգէեան ծովի մանր կղզիներից շատերը։ Նրանք բոլորն էլ կտրել են իրենց կապը Աթէնքից և մտել ժամանակաւոր կառավարութեան հովանու տակ։

Վենեզիլոսի այս քայլը քաղաքական էքսպերիմենտ չի հանդիսանում, ինչպէս կարծում են շատերը, այլ լուրջ մտածուած և բազմակողմանիօրէն կշռադատուած գործի բնոյթ է կրում։ Դեռ մինչև նրա մեկնելը դէպի կղզիները Սալոնիկի զինուորական շարժումը սպառնալի չափերի էր հասել։ Արդէն 240 սպայ, 54 աւագ սպայ և 6 գեներալ մի քանի տասնեակ հազար զինուորների հետ միասին ազգային ինքնապաշտպանութեան կոմիտէն մի գծով միացել են գեներալ Սարայլի զօրքերին և կռւում են բուլղարների դէմ։ Կաւալայի, Րուպելի, Սերեսի, Դրամայի և յունական Մակեդոնիայի մեծ մասի բուլղարներին յանձնելը չէր կարող աննկատելի անցնել և յունական տորմիղի համար։ Վերջին շաբաթներս նաւաստիների ու ծովակալների մէջ առաջացած յուզումները վերջացան նրանով, որ «Իդրա» և «Սպեցիա» յածանաւերը և մի քանի ուրիշ պատերազմական նաւերի հետ միասին նոյնպէս արտասանեցին իրենց պրոնունցիամենտոն։ Ըմբոստ նաւաստիների գլուխն է անցել Կունդուրիոտիսը, որ Յունաստանի ամենաժողովրդական ծովակալն է համարւում։ Նա էլ մտել է ժամանակաւոր կառավարութեան մէջ և Վենեզիլոսի հետ միասին ստորագրում է կոչերի ու հրամանների տակ։ Վերջապէս այս զինուորական անարխիան իր ազդեցութիւնն է գործել նաև թագաւորի անմիջական գործակիցների շրջանում. գլխաւոր շտաբի կառավարիչ գեներալ Մոսխոպուլոն ևս արտայայտուելով յօգուտ Յունաստանի հանդէս գալուն՝ հրաժարական է տուել և արձակուրդի անուան տակ յետ քաշուել գործերից։

Այս բոլոր իրադարձութիւններն անկասկած հաշուի է առել Վենիզելոսը իր անհաւոր քայլն անելիս։ Եւ բոլոր նշաններից երևում է, որ նրա հաշիւները ուղիղ են դուրս գալու։ Կոստանդին թագաւորը երևի մի առժամանակ ևս կըդիմադրի այս ազգային շարժմանը։ Սակայն նրա քաղաքականութեան, թերևս նաև նրա դինաստիայի օրերը համարուած են արդէն։ Կազմակերպուած ժողովրդական շարժմանը դիմադրաւել չէ կարողացել դեռ ոչ մի միապետ, չի կարողանալու և Կոստանդին թագաւորը։

Ա. Չ.

---

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

Կ. Հ. Բ. Ընկ. Բաթումի ճիւղը.—Թիւրքական գազանութիւններից ազատուած Տրապիզոնի երկսեռ որբերի օգտին հանգանա-

կած է 1) Արինսկայա և Կրեմսկայա կայարաններում բնակող տրապիզոնցիների շրջանում 468 ռ. 50 կ., և 2) Կրեպոստնոյիում 154 ռ. 50 կ. ընդամենը 623։ ռ Կ. Հ. Բ. ընկերութեան Բաթումի վարչութիւնը Եկատերինոտարի Հայկական Կոմիտէի միջոցով ստացած գումարի համար հրապարակով յայտնում է իր խորին շնորհակալութիւնը։

Փոխ-Նախագահ՝ Ե. Մանթաշեան
Անդամ-Գանձապահ՝ Մ. Սիմէօնեան

* * *

ՔԱՐՈՒԱՆՍԱՐԱ—Կ. Հ. Բ. Ընկ. տեղիս Վարչութեան ջանքերով ստացուեց 1) Բ. Ղազումեանից 200 ռ. ի յիշատակ իր կին Սալոմէի։ 2) Շրջանիս Թալա գիւղացի հանգուցեալ Սարգիս, Յանում և Խաչատուր ու Եազգիւլ Վանէսեանցների ժառանգներից 200 ռ. գումարներ. մտցուեցին տեղիս Մանր Վարկի ընկ. գանձարան, որոնց տոկոսներով պիտի պահուեն 4 որբ չքաւոր աշակերտներ տեղիս և Թալայի եկ. ծխ. դպրոցներում։

Վարչութիւնս յայտնում է նուիրատուներին իր խորին շնորհակալութիւնը, ցանկանում է այս բարի օրինակին հետևեն շատերը։ Մեր գիւղական դպրոցների որբ և չքաւոր սաները կարօտ են այսպիսիների օգնութեանը։

Նախագահ Վարչութեան՝ Մ. քհն. Էգիլեան
Գանձապահ՝ Կ. Սարոյեան

* * *

Կ. Հ. Բ. Ընկ. խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է՝

ա) Թիֆլիսի փոխադործ վարկի ընկ. ծառայողներից յօգուտ փախստականների 14 ռ. 30 կ.

բ) Բ. Շարմնեանից Խոյթա գիւղից, յօգուտ կորած որբ երեխաների 25 ռ.

գ) Նոյն գիւղից Գ. Մելքոնեանի ձեռքով ժողոված 100 ռ., որից 50 ռ. յօգուտ «մի հայ—մի ոսկի», 25 ռ. յօգուտ որբ երեխաների ժողովման և 25 ռ. յօգուտ փախստականների։

* * *

Կ. Հ. Բ. Ընկ. խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է տիկին Վարվառէ Իվանովա Բանանեանից յօգուտ «Համբաւաբերի» 100 ռ.։

Այդ գումարի հաշուին ուղարկուելու են Համբաւաբերի համարները ձրիապէս գաղթականական դպրոցներին։

---

## ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳՐԵՐ

### ՀԱՅ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷԻՆ

*Վան—Օհանջանեանից*

Պահեստը բացուած է. մթերքներ չկան. մատակարարում ենք տեղական հացահատիկներ. վերցնում ենք ցորեն, փոխարէնը Երևանի, Իգդիրի, Ղամարլուի պահեստներից ալիւր տալիս։ Խնդրում եմ կարգադրեցէք յիշեալ պահեստների կառավարիչներին բաց թողնեն Վանի պահեստի հաշուին օրդեր ներկայացողներին ալիւր. այս միջոցով հնարաւոր կը լինի մի ամիս ևս (մատակարարել) պահել։ Խնդրում եմ ուղարկել մի բժիշկ դեղօրայքով, բնակիչները բառի բուն նշանակութեամբ տառապում են ջերմով։

—

*Բայազէտից—Բայազէտի հիւանդանոցի գլխաւոր բժշկից.*

Խնդրում եմ թոյլ տաք բաց թողնել հիւանդանոցի կարիքների համար ձեր պահեստից նաւթ և շաքար։

*Բաքու—Տէր-Միքայէլեանից*

Շաքարի համար տեղափոխեցէք մօտ 70 հազար ռ. շուտով ուղարկեցէք նարեադ (НАРЯДЪ)։

—

*Իգդիր—Ազարեանից*

Ալիւր ուղարկեցի Ալաշկերտ, Բայազիտ՝ ալիւր, մի... և թէյ. Երևան՝ շաքար. Վանի տրանսպորտը դուրս եկաւ հետը վերցնելով շաքար, թէյ և նաւթ։

---

## Քրոնիկոն

Կ. Հ. Բ. Ընկ. խորհուրդը աչքի առաջ ունենալով կենսական պիտոյքների անասելի թանգութիւնը, որոշեց սոյն սեպտեմբերի 25-ից բանալ ընկ. ճաշարանը և նշանակել ամսավճար վեց ռուբլի, սակայն ի նկատի ունենալով, որ շատ աշակերտներ չեն կարող նոյն իսկ այդ չնչին ամսավճարը վճարել, խորհուրդը վստահ մեր հասարակութեան կարեկցութեան վրայ, դիմում է բարերար անձանց և խնդրում վերցնել մի կամ մի քանի աշակերտներ իրենց հաշւով, ամսական վճարելով իւրաքանչիւրի համար վեց ռուբլի և այդպիսով հնարաւորութիւն տալ մեր ծխական դպրոցների չքաւոր աշակերտներին ընկ. ճաշարանից ստանալու [illegible] թարմ ճաշ։

Խորհուրդը բացի վճարով աշակերտներից, ճաշ է տալի ձրիաբար բազմաթիւ աշակերտների, որոց թիւը արդէն լրացած է։

* * *

Բարերարների անունները պարբերաբար կը հրատարակուին «Համբաւաբեր»ում։

* * *

Կ. Հ. Բ. Ընկ. գրադարանին նուիրուած են հետևեալ անձերից գրքեր։

Գ. Մելիք Կարագեօզեանից 3 կտոր
Տ. Աթաբէգեանից 4 կտոր
Եղ. աք. Գեղամեանից 3 կտոր
Լ. Լիրաքեանից 7 »
Հ. Աճէմեանից 1 »
Ջալինեանից 2 »
Կապիտան Ա. Խոսրոեից 29 »
Ց. Խանդամեանից 1 »
Ծ. Վիրաբեանից 5 »
Ս. Կանայեանից 1 »
Մ. Պետրոսեանից 4 »
Մ. Մելիք-Շահնազարեանից 20 »
Ընդամենը 79 կտոր

* * *

Քաղաքում խոլերայով հիւանդացողների թիւը հետզհետէ սկսել է պակասել։

* * *

Մոսկուայի գեղարուեստական թատրոնի նախկին դերասան Ս. Ն. Վորոնովը բացել է արուեստների վարժոց, ուր աշակերտաշակերտուհիների մեծ մասը պատրաստւում է ռուսական բեմի համար։ Պատրաստուողների մէջ կան հայուհիներ և վրացուհիներ։

* * *

Թիֆլիսի պօլիտեխնիքական ինստիտուտը բացուելու է առաջիկայ 1917 թուից, դասախօսութիւնները կատարուելու են առայժմ 2-րդ գիմնազիայում։

* * *

Այսօր տեղի է ունենալու Թիֆլիսի Կօօպերատիւ ընկերութեան անդամների ընդհանուր ժողովը։

* * *

*Սեպտեմբերի 18-ին երեկոյեան ժամը 11-ին Թիֆլիսի թեմի նոր առաջնորդ Մխիթար եպիսկոպոսը Թիֆլիս ժամանեց և ամսիս 21-ին*

***

*Ամսիս 21-ին Թիֆլիսի Բարեգործական ընկերութիւնը կազմակերպեց տուփերով մի օրեայ հանգանակութիւն։*

***

*Կուր գետի շուրջը կրկին ենթարկուեց հետազօտութեան, որից պարզուեց, որ ջրի մէջ խօլերային բացիլներ չկան։*

***

*Շուտով սկսուելու է Հայ գրողների գրական երեկոների շարքը. առաջին երեկոյթը նուիրուած է արեւմտահայ գրականութեան, որի մասին դասախօսելու են՝ տիկ. Զապէլ Եսայեան և պ. Մ. Մատէնճեան։*

***

*Քաղաքային վարչութիւնը ձեռնարկել է երկրորդ հացթուխարան կառուցանելու, Զաւակզալի և Դիդուբէի ազգաբնակութեանը հաց մատակարարելու համար։*

***

*Զինուորներին ժամանակամիջոց տուող Պետրոգրադի գլխաւոր Կոմիտէն բոլոր քաղաքային կոմիտէներին ուղարկել է մի շրջաբերական, որով յայտնում է թէ ժամանակամիջոց պէտք է տալ բոլոր մանր վարկի և սպառողական ընկերութիւնների հաշուապահներին, կառավարիչներին, նախագահներին և այն ծառայողներին, որոնց աշխատանքը համարւում է անփոխարինելի։*

***

*Վ. Բրիւսովի խմբագրութեամբ լոյս տեսաւ «Հայաստանի Պոէզիան» ժողովածուն։*

***

*Նոյեմբերին կայանալու է Թիֆլիսում Կովկասեան կուրօրտային (բուժական) ընկերութեան առաջին համագումարը։*

*Ցանկալի է, որ այն անձինք, որոնք ուսումնասիրած են մեր երկիրը բուժական տեսակէտից, մասնակցէին համագումարին և զեկուցումներ ներկայացնէին։*

***

*Հոկտեմբերի 3-ին Թիֆլիսի Քաղաքային Դումայի նիստում տեղի կունենայ քաղաքագլխի տեղապահի ընտրութիւն։*

*Թեկնածուներ համարւում են Իշխան Մ. Ա. Արղութեանը և պ. Գ. Ժիւրուլի։*

***

*Պետական Դումայի անդամ Մ. Ի. Պապաջանեանցը Պետրոգրադից եկել է Կիսլավոդսկ. մօտ օրերս գալու է Թիֆլիս։*

***

*Պետիգորսկ վախճանվեց Պետրոգրադի և Մոսկվայի հայոց եկեղեցիների Խորհրդի նախագահ և Կայսերական պալատի շտալմէյստէր Ս. Ս. Աբամելիք-Լազարեան։ Հանգուցեալը ամուսնացած էր ռուսի վրայ, ժառանգ չունէր, նա թողել է շատ կալուածքներ և միլիոնների դրամագլուխ։ Յայտնի Լազարեանների ցեղը վերջացաւ։ Թէ ինչ կարգադրութիւն է արել հանգուցեալը իր հսկայական կարողութեան մասին, դեռ ևս յայտնի չէ։*

---

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ՏԱՃԿԱԿԱՆ ՄԻ ԿԱՐԵՒՈՐ ԴՈԿՈՒՄԵՆԴ ՀԱՅԿԱԿԱՆ ՋԱՐԴԵՐԻ ՄԱՍԻՆ*)

*Յարգելի պարոն!*

*Շատ ժամանակ չի անցել, որ երջանիկ և առաջադէմ մի շրջան թեակոխելով ճշմարիտ ազատութեան և արդարութեան բարիքին արժանացանք. այլևս մեր խանդավառութիւնը անհուն է. վաղուց ի վեր կորսնցուցած մարդկային արդար իրաւունքները ձեռք բերինք այժմ վերջապէս։*

*Այո, Իթթիհատ և Թերագգի (Միութիւն և յառաջադիմութիւն) կառավարութեան անիրաւ ու բռնապետական շղթաները՝ ռուս բանակի շնորհիւ կտրտեցինք, ձգեցինք։*

*Ձեզանից առանց քաշուելու հարցնում եմ, արդեօք ընդքարշ գնացող այս կառավարութեան վրայ վստահ էք, բռնութեան, աւազակութեան վրայ հիմնուած կառավարութիւնը կայուն պիտի մնայ. երբէք սիրելիս, երբէք։ Վստահ եղէք, որ բռնութեան, կեղեքումի ներքև անմեղ ժողովուրդը, աշնան գունաթափ տերևների նման դողդողալով գետին պիտի ընկնի։*

*Արդի Օսմ. կառավարութիւնը, մի խումբ աւազակ, մարդասպան, աֆէրիստ և դժոխային ոգիներից կազմուած է, որը Սուլթանական կառավարութեան մէջ երեք նպատակ ունի, ա.) գողանալ և կողոպտել կառավարութեան գոյքը, բ.) պատիւ արատաւորել և բռնաբարել, գ.) սպանութիւն։ Էնվէր, Թալէաթ, Խալիլ, Իպրահիմ, Ճէմալ, Շիւքրի, Խայրի, Սայիտ և Աթիֆ՝ այս անուններով յիշատակուած անիծեալ որդերը խայտառակութիւն ու գարշութիւն են յառաջ բերում ժողովրդի մէջ։ Ընդհ. պատերազմին մասնակցելու համար, Գերմանիայից հինգ, Աւստրիա-հունգարիայից երկու ու կէս միլիոն Օսմ. ոսկի կաշառք առնող, և դարձեալ ի նպաստ Թուրքիային թեթև պայմանագրով Ադրիանուպօլիս Պուլկարիային իբր հատուցում թողնող, Իթթիհատի չարագործ կառավարութիւնն չէր միթէ։*

*Աւազակ նախարարներից համախմբուած մինիստրութիւն, իր բռնութեան ու մարդասպանութեան մէջ այնքան առաջ գնաց, որ Ճինկիզներին, Հելագուներին, Թէմուր-Լէնկներին ու Ներոններին յիշելով բ ա հ մ է թ (ողորմի) ենք կարդում։*

*Մարդկային սրտերը մեծ յուզում պատճառող հայկական ընդհանուր ջարդին պատճառը, անհաւատ Իթթիհատը չէր միթէ։*

*Միլիոնաւոր մի ժողովրդի դժբաղդութեան հրամանն ստորագրող այս կառավարութեան, անգութ, անխիղճ փ ա տ ի շ ա հ ն չէր միթէ։*

*Օսմ. կառավարութեան օգտին հաստատուն և թանկագին պարկեշտութեամբ գործող հայերը, որոնք դարերից ի վեր թուրքերի հետ միասին հայրենակիցներ էին, այդ բռնաբարեալ ազգը՝ Թալէաթներն և Էնվէրները իրենց գարշելի բաղձանքների և անիծեալ նպատակների համար, մինչև կաթնակեր մանուկը սրի քաշեցին, նրանց հարստութիւնն ու գոյքը յափշտակեցին, նրանց կանանցն ու կոյսերին պատիւն ու պարկեշտութիւնը արատաւորեցին, բռնաբարեցին։*

*Փոքր ժամանակուայ ընթացքում Օսմ. երկրի հողն ու ջուրը հայ դիակներով լեցուցին, սրտերը կտրատող ցաւալի տեսարաններ սարքեցին, հարստահարեալների հոգին կսկծեցնող հեծեծանքներին, անմեղ ողբ ու կոծերին անգութ կերպով կարևորութիւն չտուին, կանանց և երեխաների կեանքին լոյսը արիւնով մարեցին, մինչև իսկ Իթթիհատի անսիրտ պաշտօնեաները վայրենի գազաններին նմանող գարշելի տեսարաններ հայերի համար սարքելուց չխրտչեցին։*

*Իրաւունքի ու արդարութեան ձայները խեղդուեցին թուրք*

*) *Ծանօթ. Խմբ. Սա մի գրութիւն է, որ կազմել է Բաֆրայի գաւառապետ Էյուպ զատէ Բահչատը, որից քաղում ենք կարևոր մասերը։*

կան, ծովային նախարարներ՝ Ճալիլ, Էնվէր, Ճէմալ և Օսմ. պարլամենտի նախագահ ստախօս և անիծեալ Ատիլի գարշելի արարքները մտքից հանեցի՛ր։

Տրապիզոնի կրթական տեսուչ Ճելալ բէկ, որ ոչ մի արժանաւորութիւն և կարողութիւն չունէր, մէկը այնպիսի կարևոր պաշտօն ստանալու պատճառը իր կուսակցութեան գարշելի ծրագիրներ յաջող կերպով գործադրելն էր։ Ո՛չ մի օրէնք և խիղճ չէր ընդունէր այս գարշելի արարքը, որ կատարեց Էնվէր Փաշան, Պերլինից վերադարձին գինով վիճակի մէջ իր քրոջ հետ ապօրինի յարաբերութեան մէջ մտաւ, արդեօք այդ անզգամի գործածները մոռացա՞ր։

Կառավարութեան, ազգին և հայրենիքին ծառայութեան համար ոչ մի ժամանակ յետ չը կանգնող, հաւատարիմ և պատուաւոր զինուորական Նազիմ փաշան սպանող, Սարի-ղամիշի վրայ անօգուտ մի գրոհի ժամանակ վաթսուն հազարանոց մի ընտիր զօրաբանակ և վերջապէս հարիւր հազարաւոր ընտանիքներ կորսընցնող, իր կուսակցութեան արած աղտեղի գործեր հանրութիւթիւնից ծածկելու համար պաշարի և զգեստի պահեստները (դէպօ) ցուցակներով մէկտեղ այրել տուող չարագործ, նենգ Էնվէրը չէ՞ր։

Պատմութեան մէջ արժանի կերպով յիշատակուող դահճաւանց Եուսուֆ-Իզզէդին էֆէնդու նման, մեր հայրենիքի ապագայ երջանկութեան աշխատող մի սրտացաւ, մի արքայազունը՝ Սուլթանական և Խալիֆայութեան իրաւունքներից զրկելու համար վայրենաբար սպանող և սպանութեան վերաբերեալ կեղծ տեղեկագիր (Թափոր) պատրաստող ու հրատարակող այս եղուխտ Էնվէրը չէ՞ր։

Ո՛չ մարգարէների և ո՛չ ս. գրքի միջոցով չեն յայտնուած այնպիսի բռնաբարութիւններ, սպանութիւններ, ինչպէս անբաղդ հայերը կրեցին ընդհանուր ջարդ ու կոտորածին, Շէյխ Իւլիսլամ Խայրի էֆենդին չէ՞ր այս ֆ է թ վ ա ն վճիռ տուողը։

Եգիպտոսի խտիվի մահուան արինոտ վճիռ տուող, Շէյխ իւլիսլամ չէ՞ր։

Իթթիհատների այդ գարշելի, նենգաւոր խումբը հայրենիքի սրտի վրայ անբուժելի վէրքեր բացեց։ Զինուորացուները աղատելու խոստումներով կաշառք առած գումարները անհաշուելի են։ Զինուորների ընտանիքներին յատկացուած ամսաթոշակներն նըրանք իւրացրին։

Օսմ. զօրաբանակը ամեն կողմ պարտուած լինելով հանդերձ նրան յաղթական հռչակեցին և սուտ հեռագիրներ տեղացին, պաշտօնական սուտ յայտարարութիւններ ցրուեցին։

Հակառակ կուսակցութեանց պատկանողների վրայ յանցանքներ բարդելով, հազարաւոր գաղափարական երիտասարդներին վտարեցին։ Պոլսոյ և գաւառների մէջ տիրող բռնակալութեանց դէմ խօսողներին հայրենիքի ամենամեծ, ամենազարգացած հերոսներին, Իշխան Սապահէտտիններին, Շէրիֆ փաշաներին, Րէշիդներին, Մահմուդ-Սատըգներին և Ալի-Քեմալների նման մարդկանց մահուան վճիռ տուին։

Նուիրական աւանդներին ձեռք երկարցնող ու բռնաբարող այս կառավարութեան հնազանդել ոճրագործութիւն է։ Որովհետև դեռ Իթթիհադի կառավարութիւնը մարդասպան է և դաւաճան, այսպիսի հանգամանքներով օժտուած մի կառավարութեան հպատակել և հնազանդիլ ներելի չէ։

Մ ասգա Նահիէի (գիւղախումբ) Լիվարա գիւղը բնակող, Գաֆրայի գայմագամի փոխանորդ Վալազամի նախկին (կառավարիչ) էյուպ Զադէ Բահչատ

6 յունիսի

Թարգմ. Թիւրք. Մ. Մովսիսեան

---

# Գ ե ղ ա ր ու ե ՙ ս տ

## ԻՒՐԳԻՍ ԲԱԼՏՐՈՒՇԱՅՏԻՍԻՆ*)

### Վ. ԲՐԻՒՍՈՎԻՑ

Осенній вѣтеръ вылъ надъ урной одинокой.
Ю. Б.

Մենք պէտք է ապրենք։ Լուսաւոր փոշուց և պայծառ
շողքից,
Կայտառ ալիքից և խոր անդունդից մենք պէտք է արբենք,
Եւ անցնենք բոլոր ծիրերը յայտնի — վեհ յաղթանակից
Դէպ անզօրութիւն, յոգնենք հիասքանչ,— սակայն չը
մեռնենք։

Մեզ են յանձնուած առեղծուածական մթին հէքեաթներ,
Ծարեր թանկագին, մանեակներ սիրուն, խօսքեր արևի,
Որ խուլ չը լինի աշխարհը երբէք, որ վառ երանգներ
Չը դժգոյնին բնաւ, որ գաղտնիքն՝ անմահ՝ ազատ
փողփողուի։

Բոցը մոլորուն — ողջ տիեզերքի յոյսը անթերի —
Բոլորակաձև պըսակ է դըրել գլուխներիս վրայ,
Եւ եթէ մեռնենք, այն ժամանակ նա՝ անփուտը՝ հեռի
Կը թըռչի կեանքից, դէպ մոլորակներն, երկինք կը սուրայ։

Գերեզմանի վէմ՝ անշունչ մեր կըրծքին սատիկ
ծանրացած՝
Փուշակ ուղիներն առ միշտ կը փակէ բոլորն անխըտրում,
Եւ ամայութեան անհեղ երգ կ՚երգէ քամին որբացած...
Մեզ չէ կարելի մեռնել. մենք պիտի զընանք անդադրում։

Սիմ. Բաբիեան

---

# Գ ր ա կ ա ն ու թ ի ւ ն

## ԳԵՐԵԶՄԱՆԻ ԵՐԳԸ

Եւ այնտեղ միայն, ուր գերեզմաններ կան, կան յարութիւններ
ՆԻՑՇԷ

(Նուէր «գաղթական» եղբայրներիս)

«Այնտեղ է շիրիմների կղզին, լռակեացը. այնտեղ են նաև շիրիմներն իմ պատանեկութեան։ Այնտեղ եմ ուզում տանել մըշտականաչ պսակը կեանքի»։

Այսպէս որոշեցի իմ սրտում և անցայ ծովով։—

Օ՛ դուք, տեսիլնե՛ր ու պատկերնե՛ր իմ պատանեկութեան։ Օ՛ դուք, հայեացքներ սիրոյ և աստուածային վայրկեաններ։ Որքա՜ն

*) Ю. Балтрушайтисъ-ը ժամանակակից յայտնի ռուս բանաստեղծներից մէկն է։ Նա Վ. Բրիւսովի ընկերն է եղել իրանց գրական գործունէութեան առաջին տարիներից, երբ միասին, սրանից մի 15 տարի առաջ, Մոսկուայում, լոյս էին ընծայում, մի քանի այլ ընկերների հետ, «Сѣверный цвѣты» յայտնի ալմանախները։

շուտ մեռաք դուք ինձ համար։ Ես յիշում եմ այսօր ձեզ, որպէս իմ մեռելներին։

Ձեզնից, իմ սիրելի մեռելներ, ինձ մի անուշ հոտ է գալիս, մի սիրտ ու արցունքներ շարժող հոտ։ Ճշմարիտ, դա ցնցում և շարժում է սիրտը մենակ նաւորդի։

Տակաւին ես հարուստ եմ ամենէն, տակաւին ես նախանձելի եմ ամենէն—ես, ամենէն մենակս։ Չէ՞ որ դուք իմն էիք, և ես ձերն եմ դեռ. ասացէք, ում համար ընկան ծառից այնպիսի վարդագոյն խնձորներ, որպէս ինձ համար։

Տակաւին ես ժառանգն եմ ձեր սիրոյ և այն երկիրը, ուր գոյնզգոյն առաքինութիւններ են աճում վայրի ձեր յիշատակին, ով իմ սիրելիներ։

Ախ՜, մենք իրար մօտ լինելու համար էինք ստեղծուած, ով անուշիկ, օտար հրաշքներ, և ոչ իբրև երկչոտ թռչուններ եկաք դուք ինձ ու իմ ցանկութեան մօտ—ոչ, իբր վստահողներ վստահելիին մօտ։

Այո, ինձ նման՝ հաւատարմութեան ու քնքոյշ յաւիտենականութեան համար ստեղծուած.—մի՞թէ պէտք է ձեզ ձեր անհաւատարմութեան անունով կոչեմ, ով աստուածային հայեացքներ ու վայրկեաններ։

Ճշմարիտ, շատ շուտ մեռաք ինձ համար, ով փախստականներ։ Բայց ոչ դուք ինձնից փախաք, ոչ էլ ես ձեզնից։ Մեր անհաւատարմութեան մէջ մենք անպարտ ենք իրար։

Ինձ սպանելու համար՝ ձեզ խեղդամահ արին, ով երգեցիկ թռչնակնե՛ր իմ յոյսերի։ Այո ձեզ վրայ, ով սիրելիներ, նետեց չարութիւնն իր նետերը—իմ սիրտը հարուածելու համար։

Ու հարուածե՜ց։ Չէ՞ որ դուք էիք միշտ իմ սրտին ամենէն մօտիկը, իմ ունեցածն և ում որն էի ես. ուստի և պէտք է դուք մեռնէիք այնքա՜ն երիտասարդ և այնքա՜ն շուտ։

Իմ ամենէն վիրաւորական տեղին, որ ունէի, արձակեցին նետը, այդ դուք էիք, որոնց կաշին նման է աղուամազի և աւելի ճիշտը—ժպիտի, որ մեռնում է մէկ հայեացքից։

Բայց այսպէս պէտք է խօսեմ իմ թշնամիների հետ. ինչ է ամեն տեսակի մարդասպանութիւն այն ամենքի նկատմամբ՝ ինչ դուք ինձ արիք։

Աւելի մեծ չարութիւն էք արել դուք ինձ՝ քան ամեն տեսակի մարդասպանութիւն։ Անվերադարձնելի՛ն խլեցիք ինձնից. այսպէս եմ խօսում ձեզ հետ, իմ թշնամիներ։

Չէ՞ որ դուք սպանեցիք պատկերներն ու ամենասիրելի հրաշքներն իմ պատանեկութեան։ Մանկութեան ընկերներիս խլեցիք ինձնից, երանելի՜ հոգիներին։ Նրանց յիշատակին եմ ձօնում այս պսակն ու այս անէծքը։

Այս անէծքը ձեզ վրայ, իմ թշնամիներ, չէ՞ որ դուք կարճեցիք իմ յաւիտենականութիւնը, որպէս հնչիւնն է մեռնում սառը գիշերին։ Հազիւ էր բացուել սա ինձ համար աստուածային աչքերի փայլով—որպէս մի վայրկեան։

Այսպէս խօսեց իմ մաքրութիւնը բարի ժամին. «աստուածային պէտք է լինին ինձ համար բոլոր արարածները»։

Այդ պահին յարձակուեցիք դուք ինձ վրայ կեղտոտ ուրուականներով. ախ, ո՞ւր փախաւ այն բարի ժամը։

«Բոլոր օրերը պէտք է սուրբ լինեն ինձ համար»—այսպէս էր խօսում մի ժամանակ իմաստութիւնը իմ երիտասարդ օրերի. ճշմարիտ, մի ուրախ իմաստութեան խօսք։

Բայց այն ժամանակ, իմ թշնամիներ, դուք խլեցիք իմ գիշերները և ծախեցիք անքուն տանջանքների, ախ, ո՞ւր փախաւ այն ուրախ, կենսուրախ իմաստութիւնը։

Երբեմն թռչունների երջանիկ նշանակներ էի որոնում բաւոն կերպով. այդ ժամանակ մի չարագուշակ ճիւաղ—բու բաց թողիք իմ ճանապարհին. ախ ո՞ւր կորաւ իմ քնքոյշ ցանկութիւնը։

Երբեմն ամեն զարշանքից հրաժարուել ուխտեցի. բայց դուք ժահրոտ պալարներ դարձրիք իմ մերձաւորներին ու ամենամերձաւորներին։ Ախ՜, ո՞ւր կորաւ իմ ազնիւ ուխտը։

Երբեմն կոյրի նման գնում էի երանելի ուղիներով. ցեխ ու խոչեր ձգեցիք կոյրի ճանապարհին, արդ նա զարշում է կոյրի հին շաւիղից։

Եւ երբ ես իմ ամենադժուարին բանը կատարեցի ու իմ յաղթահարումների տօնն էի տօնում՝—ստիպեցիք նրանց, որոնք ինձ սիրում էին, աղաղակել, իբր ես նրանց մեծ ցաւ եմ պատճառում։

Ճշմարիտ, այս է եղել միշտ ձեր գործը. դուք թունաւորեցիք իմ ամենաքաղցր մեղրը և աշխատանքը իմ ամենալաւ մեղուների։

Իմ ողորմածութեան շնորհիւ ամենայանդուգն մուրացիկներին ուղարկեցիք ինձ մօտ, իմ կարեկցութեան համար դուք միշտ էլ անրուժելի անպատկառներին մղեցիք դէպի ինձ։ Այդպէս վիրաւորեցիք իմ առաքինութիւններին և իրենց հաւատը։

Եւ երբ իմ ամենասուրբ բանը զոհի սեղանի վրայ դրի՝ իսկոյն ձեր «բարեպաշտութիւնն» էլ իր գեր պարգևները դրեց դրա մօտ, այնպէս որ ձեր ճարպի ու ճենճերի մէջ իմ ամենասուրբ բանը խեղդուեց։

Ու երբեմն ես պարել կամեցայ, որպէս երբէք դեռ չէի պարել ես, բոլոր երկնակամարներից վեր պարել կամեցայ։ Այդ ժամանակ իմ ամենասիրելի երգչի միտքը փոխեցիք։

Ու նա երգեց մի տխուր, ճնշող եղանակ. ախ, նա փողահարեց իմ ականջին՝ որպէս մի չարագուշակ շեփոր։

Մահագո՛յժ երգիչ, չարութեան գործիք, դու, անմեղների անմեղը։ Արդէն պատրաստուել էի ամենալաւ պարի համար. քո հնչիւններով դու իմ ամենախանդավառ ոգևորութիւնը սպանեցիր։

Միայն պարով եմ կարողանում ես ամենաբարձր բաների սիմբոլները յայտնել.—և արդ իմ ամենաբարձր սիմբոլը մնաց անյայտ, իմ մարմնի մէջ։

Առանց արտայայտուելու և լուծման մնաց իմ ամենաբարձր յոյսը. և մեռան իմ մէջ բոլոր պատկերներն ու սփոփանքները իմ պատանեկութեան։

Ինչպէ՞ս համբերեցի ես։ Ինչպէ՞ս յաղթեցի ու յաղթահարեցի ես այսպիսի ցաւերն ու վէրքերը։ Ինչպէ՞ս յարութիւն առաւ նորէն հոգիս այդպիսի գերեզմաններից։

Այո, մի անխոցելի, մի անթաղելի բան կայ իմ մէջ, մի ժայռեր խորտակող բան. այդ իմ կամքն է։ Լուռ քայլում և անցնում է դա անփոփոխ տարիների միջից։

Իր քայլուածքով է ուզում գնալ դա իմ ոտքերով, իմ հին կամքը. անսիրտ է նա և անխոցելի։

Անխոցելի եմ ես միայն իմ կրունկից։ Դեռ ապրում ես դու այնտեղ, ինքդ քեզ հաւատարիմ, դու ամենահամբերող։ Դեռ անցնում ես կենդանի բոլոր գերեզմաններից։

Քո մէջ է ապրում նոյնպէս դեռ անլուծելին իմ պատանեկութեան ու որպէս կեանք և երիտասարդութիւն՝ նստած ես դու յուսառատ այստեղ—դեղին աւերակների ու գերեզմանների վրայ։

Այո, դու դեռ բոլոր գերեզմանների խորտակողն ես ինձ համար։ Ողջո՜յն և փառք քեզ, իմ կամք։ Եւ այնտե՛ղ միայն, ուր գերեզմաններ կան, կան և յարութիւններ։

Ֆր. Նիցշէ

«Այսպէս խօսեց Զրադաշտը» գրքից թարգմ. Վ. Խ-նի

## ԴԱՒԱՃԱՆ

I

Լուսաւոր սրահին մէջ, օրքեստրի կայթերուն հետ՝ գիրկընդխառն զոյգերը կը պտուտկէին խօլարձակ...

Դիրքերէն նոր վերադարձող սպայի երեւոյթով համազգեստի մէջ սեղմուած զինուորական մը՝ դիմագիծերու սուր արտայայտութեամբ, թխահեր և գրաւիչ արտաքինով օրիորդի մը թեան-

ցուկ, ճամբայ կը փնտռէր անցնելու համար խաժամուժին մէջէն։ Պատահմամբ՝ սեւազգեստ, միջահասակ, մարմնական նուրբ ձեւերով երիտասարդ մը դէմ առ դէմ եկաւ զոյգին հետ։

Վայրկեան մը երեքին հայեացքները խաչաձեւուեցին եւ երեք ճիչեր յաջորդեցին իրարու...

—Գարեգի՜ն...

—Մաշա՜...

—Գրիշա՜...

Գարեգինը սեւազգեստ երիտասարդն ըլլալու էր, որու սեւոււն հայեացքը չէր բաժնուեր Մարիին (Մաշա) դէմքէն, իսկ վերջինս բոլորովին կարմրատակած, միջոց մը կը փնտռէր անոր հայեացքէն ազատուելու համար։

Արձակուած ճիչերէն անմիջապէս վերջ, սառնութեան մըթնոլորդ մը պատեց երեքին մէջ գտնուած անջրպետը։

Զոյգը ուզեց ճամբան շարունակել... երիտասարդը տեղէն չը շարժուեցաւ. սպան կամացուկ ըսնեց անոր թեւէն եւ զսպուած զայրոյթով.

—Խնդրեմ ճամբայ տուէք.

—Դիրքերուն մէջ ըրածիդ պէս փախչելու կ'երթաս, Գրիշա, խօսեց եզակի հեգնական թօնով երիտասարդը։

Սպան գունաթափ կակազեց...

—Ես, ես... պատրաստ եմ երդուելու, որ կեանքիս մէջ երբեք փախած չեմ...

—Դո՛ւ, բայց ինչո՞վ կրնաս երդուել.

—Ինչով որ կուզես...

—Լաւ, ուրեմն երդուէ այս օրիորդի պատուով, գողացող ձայնով մ'ըսաւ երիտասարդը...

Սպան վայրկեան մը լուռ կեցաւ, վայրկեան մը, որ դար մը եղաւ երիտասարդին համար...

—Կ'երդուեմ այս օրիորդի պատ...

Դեռ խօսքն չը վերջացուցած, երիտասարդին ձեռքէն ուժգին հարուած մը ընդունեց դէմքին վրայ։

Վայրկեան մը շշմած պատրաստուեցաւ պատասխանելու, բայց արդէն ինքզինք բաժնուած գտաւ իր հակառակորդէն։

Սրահին մէջ փայլակի պէս շողաց երիտասարդին ապտակը եւ ամէն կողմէ դէպ հոն խուժեցին...

Օրիորդը մարած էր...

II

Երիտասարդ հարիւրապետ Գարեգինը սպայ էր... Վաշտին մէջ, ճակատամարտի օր մը անիկա յառաջ անցաւ իր խումբովը, օգնական ունենալով իրեն յիսնապետ Գրիգորը (Գրիշա)։

Խումբը կը յառաջանար հովիտի մը մէջէն, հրացէնի ձայներ վայրկեան մը խումբ անորոշ դրութեան մէջ դրին. ուստի պաշտպանուելու անկարելիութենէն մղուած արշաւեցին եւ բաց դաշտ ելան։

Դաշտին մէջ խումբը արդէն ցանցառ էր եւ Գարեգինը աներեւոյթ թշնամին հանդէպ անկարող եղաւ իր ընկերքը որոշել, համազարկերը սաստկացան, հրամայեց վար իջնել ձիերէն. վերջապէս թշնամին երեւցաւ բաց դաշտին մէջ խելայեղօրէն արշաւող, խումբը գերեվարելու ի խնդիր։ Տղաներ ետ դարձան եւ ձիերնին մեծ դժուարութեամբ գիրքեր չինելով սկսան դիմադրել յուսահատօրէն։

Գարեգինի գոռացող ձայնը կը տիրապետէր ամենուրեք։

—Տղայք, արիութի՜ւն...

Յիսնապետ Գրիգորի ձին զարնուեցաւ այն բոպէին՝ երբ կապիտան Գարեգինը տաք բան մը զգաց իր ձախ ատինքին մէջ. վայրկեան մը գլխու պտոյտ ունեցաւ, աչքերը մթնեցան ու ինկաւ, քիչ յետոյ բացաւ աչքերը եւ հեռուն տեսաւ իր օգնական սպայ Գրիգորի սիլուէթը, որ Գարեգնի սիրական ձիու վրայ նըստած կ'արշաւէր։ Վիրաւորը ձեռքը գետնին կրթնցնելով փորձեց քիչ մը բարձրանալ, բայց կրկին ինկաւ ու անզօր կատաղութենէն սկսաւ հեծկլտալ...

Աչքերը կրկին գոցուեցան, ձիերու հեռաւոր խուլ դոփիւնները կը հնչէին իր գանկին մէջ եւ այնպէս կարծեց, որ բանակներ անցան ու դարձան իր վրայէն, ապա պատկերներ աղօտցան, մարմիններ իրենց իրական ձեւերը փոխեցին, բաժնուեցան, միացան, անծանօթ շրջագիծեր կազմեցին. յետոյ յանկարծ բոլորն ալ աներեւոյթացան եւ սպիտակ պայծառ սուեր մը, աստուածային ժպիտով պատկերացաւ իր երեւակայութեան խորքը...։

– Մաշա՜... մրմնջեցին մեքենայօրէն իր շրթունքները...

Աչքերը բացաւ ու տեսաւ կարմրագոյն խաչ մը, սպիտակ ֆոնի վրայ, որ իր վրայ ծռուած էր, ապա կըրցաւ որոշել կանացի մարմնի մը փափուկ ձեւերը...

—Անշուշտ Մաշան ըլլալու չէ, մտածեց ամփոփելով իր նուաղ ոյժերը, նէ այսպէս տարօրինակ շորեր եւ կարմիր խաչ չունի իր կրծքին վրայ եւ մանաւանդ որ հազիւ թէ կը սիրէ զիս..,

Հասկցաւ, որ գթութեան քոյր մընէր, որ իրեն կը մրմնջէր քաղցր ձայնով մը։

—Պարո՛ն, հոգ մի ընէք, ձեր վէրքը անվնաս է....։

III

Կ. գետին ափը փռուած կանաչ մարգագետնի երկայնութեամբ՝ հակառակ կողմերէն երկու խումբեր իրարու կը մօտենային, բայց դեռ իրար մօտ չհասած կանգ առին եւ հանդիպակաց խումբերէն երկու հոգի բաժնուեցան։

Առանցմէ մէկը միջահասակ երիտասարդ մը՝ հարիւրապետի համազգեստով որոշ հեռաւորութեան մը վրայ կանգ առաւ եւ ըսաւ դիմացինին, որ նոյնպէս կանգ առած էր։

—Գրիշա՛, կը յիշե՞ս այն ճակատամարտը, երբ ես վիրաւորուեցայ եւ դու անզգայութենէս օգտուելով, հեծար ձին եւ փախար...

— . . .

—Գրիշա, կը յիշե՞ս երեկ երեկոյ, երբ կոյսի մը պատուով սուտ երդուեցար եւ գիտե՞ս թէ ով էր նա...

— . . .

Իրարմէ երեսուն քայլ հեռու էին, խումբերէն մէկէն ձայն մը եկաւ «կրակ»։

Գրիշան բարձրացուց ատրճանակը եւ կրակեց.

Գարեգին ոտքի վրայ անշարժ մնաց...

Կարգը իրեն եկաւ

Ուղղեց դէնքը...

Գրիշան երերաց եւ պառկեցաւ մարգին վրայ...

Բոլորն այն կողմը վազեցին, վիրաբոյժը յայտարարեց՝

—Հազիւ թէ ապրի...

Վահրամ

Թիֆլիս

# Գիտական

## ԽՕԼԵՐԱ

Խօլերան Թիֆլիսում չի դադարում, հիւանդների թիւը հիւանդանոցում հասնում է 118-ի (14 Սեպտեմբերին)։ Բայց բարեբախտաբար՝ խօլերայի դէպքերը այժմ կէս միլիօն ազգաբնակութիւն ունեցող Թիֆլիսում շատ չնչին են։ Կուր գետի ջրի հետազօտութիւնը ցոյց է տալիս, որ նրա մէջ խօլերայի բացիլներ չկան.

Այդ է գլխաւոր պատճառներից մէկը, որ խօլերայի տարածումը շատ աննշան չափի է հասնում, որովհետեւ այդ գլխաւորապէս լինում է ջրի միջոցով։ Հաստատօրէն կարելի է ասել, որ այժմ խօլերան մի առանձին վտանգ չի ներկայացնում, քանի որ

մանաւանդ՝ եղանակները ցրտում են, ինչ որ խոլերայի տարածման արգելք է լինում։ Գալով խոլերայի բժշկութիւնը, դորա առթիւ շարունակ գրել են և գրում են, բայց մի արմատական միջոց դեռ չի առաջարկուել։ 1892-ին երբ սաստիկ խոլերա կար մեր երկրում, առաջարկուեց «Կօլղան» (голганъ) արաղի մէջ, բայց փորձը ցոյց տուեց, որ սա ոչ մի նշանակութիւն չունի։ Գիտնական բժիշկներ առաջարկել են՝ Բօղկինի, Ինօզեմցօվի, Տեյմանի և այլ կաթիլներ, որոնց գործադրութիւնը յարգի է և այժմ, բայց նրանք ևս կտրական միջոցներ չեն. դժբախտաբար մահացութեան տոկոսը 50% համարեա չի իջնում։ «Համբաւաբերի» վերջի համարում (№ 37) կարդացինք ոմն Պապովեանի նամակը, ուր յայտնւում է, որ հայր Մանդակունու յայտնի գրքի (Ոսկի բարեկամ) 1028 երեսում ակնարկուած դեղով բժշկել է նա իւր կնոջ և ուրիշներին։

Այդ դեղօրայքից՝ բաղիքս Սումբուլի (Radix cumlali—ունի քրտնացնող յատկութիւն) բժշկականութեան մէջ այժմ չի գործածւում։

Միւս միջոցը—Ռադիքս Ռատանհէ (Radux R tenlae—ունի կապող յատկութիւն—вяжущее свойство) գործ է ածւում և այժմ իբրև միջոց։ Բայց որ այդ դեղը կարող է փրկարար ազդեցութիւն ունենալ խոլերա հիւանդութեան դէմ, այդ հարց է. այդ առաջինը, իսկ երկրորդը՝ գրած դէպքերը արդեօք խոլերա են եղել, այդ էլ չի երևում ախտանշաններից։ Մենք դորանով չենք կամենում հերքել այն միտքը, որ հարկաւոր է ուսումնասիրել ժողովրդական բժշկականութիւնը,

Եւ կան ուսումնասիրութիւններ՝ թէ հայերէն և թէ ռուսերէն լեզուով և մենք գրած ենք մեր բժշկական թերթերում, մանաւանդ «Առողջապահական թերթ»ում բժ. Արծրունու խմբագրութեամբ ժողովրդական բժշկականութեան մասին։ Հաւաքած է շատ նիւթեր նաև, մեր բազմաշխատ ազգագրագէտ Ե. Լալայեանցը յիշեալ նիւթի մասին։ Պ. պրօֆէսօր Ա. Սարուխանեանցը ունի շատ թանկագին նիւթեր բժշկական բոյսերի մասին՝ բառարանի ձևով՝ լատիներէն, ռուսերէն և հայերէն լեզուներով, բայց դժբախտաբար դեռ չի տպագրուած. ժողովրդական բժշկականութեան մասին պէտք է ասած, որ մեր կարծիքը բացասական է, մանաւանդ վիրաբուժութեան մասին։ Եթէ ներքին հիւանդութիւնները այնքան դեռ լուսաբանուած և ուսումնասիրուած չեն, նոյնը չի կարելի ասել վիրաբուժութեան մասին, որը հասել է ամենաբարձր զարգացման։ Այժմ անում են այնպիսի գործողութիւններ, որոնց մասին առաջներում երազել չէր կարելի։

Ուղեղի և սրտի վրայ օպերացիաներ շատ յաճախ են պատահում։ Նորերս գրուած էր, որ Ֆրանսիայում մի վիրաբոյժ հանել էր սրտի պատի միջից մի գնդակ։ Կրկնում եմ, այժմ ասել թէ ժողովրդական վիրաբուժութիւնը աւելի մեծ բան է քան գիտականը, նշանակում է ընկնել շատ մեծ սխալանքի մէջ։

Քանի որ այժմ դեռ խոլերան չի վերջացել, հետևաբար ես կարծում եմ աւելորդ չի լինիլ խօսել նրա մասին, հիմնուելով նորագոյն գիտական ուսումնասիրութիւնների վրայ։ Ապա ուրեմն «Համբաւաբերի» ընթերցողների համար հետաքրքրական պիտի լինի ծանօթանալ այդ սարսափելի հիւանդութեան հետ, որի մասին մենք արել ենք դասախօսութիւն ժողովրդի համար Կովկասի բժշկական ընկերութեան դահլիճում։

Բժ. Բ. Աղասարեան

(Շարունակելի)

# Մատենախօսութիւն

## Цѣлебный Кавказъ, № 3, августъ. ԲՈՒԺԱԿԱՆ ԿԱՎԿԱԶ

Կովկասի բուժական ընկերութիւնը գովելի եռանդով շարունակում է իւր գործունէութիւնը, տալով հետաքրքիր հետազօտութիւններ Կովկասի հանքային անյայտ ջրերի մասին, որոնք այնքան շատ են մեր երկրում և Հայաստանում։ Վերոյիշեալ համարը նուիրուած է՝ գլխաւորապէս Թիֆլիսի հանքային ջրերին. նա պարունակում է երկու լուրջ յօդուածներ բժշկապետ Լունկեվիչի, ուր տեղաւորուած են ամփոփ կերպիւ ամեն տեսակ հետազօտութիւններ՝ թէ պատմական, թէ քիմիական և թէ բուժական։ Բժ. Լունկեվիչի եզրակացութիւնը հետևեալն է.

Ա. Թիֆլիսի հանքային ծծմբաալկալային ջրերը՝ թէ իրենց քիմիական բաղադրութեամբ, ֆիզիքական յատկութեամբ, և քանակութեամբ՝ անպայման բուժական արժէք ունին։

Բ) Թէ ջրերի յատկութիւնը և թէ Թիֆլիսի կլիմայական պայմանները ցոյց են տալիս, որ այստեղ կարելի է ունենալ մշտական բուժակայարան։

Գ) Եւ այդ բանը հնարաւոր է անել պետական միջոցներով այժմ, երբ կայ մի առանձին ձգտում Ռուսաստանի բուժական վայրերը վերակենդանացնելու։

Թիֆլիսի քաղաքային վարչութիւնը շահագրգռուած լինելով այդ հանքային ջրերով աշխատում է վերոյիշեալ ուղղութեամբ, որպէսզի քաղաքը հարստանայ մի նոր բուժական հիմնարկութեամբ։

Վերոյիշեալ բժշկի միւս յօդուածը վերաբերում է այն հարցին, թէ ինչպէս յարմարեցնել քաղաքի հանքային ջրերը յիշեալ նպատակի համար և բերւում են շատ հետաքրքիր տեղեկութիւններ բոլոր բաղնիքների մասին, մինչև անգամ յիշւում են, թէ նրանք որքան կապալավարձ են ստանում և այլն։

Ես այստեղ երկար չեմ կարող կանգ առնել, որովհետև մեզ զբաղեցնող յօդուածները՝ գիտական ուսումնասիրութիւններ ունենալով իրանց մէջ, չի կարելի կարճ գրախօսութեան մէջ ամփոփել։ Խորհուրդ կտանք՝ կարդալ այդ յօդուածները նրանց, որոնք հետաքրքրւում են քաղաքիս հանքային ջրերով, որոնց կարելի է օգտագործել հէնց այժմ մի չնչին ծախս անելով՝ մօտաւորապէս 61.500՝ վիրաւոր զինուորների բուժման համար։ Ըստ բժ. Լունկեվիչի՝ դրա համար հարկաւոր է վերցնել Միրզոևի և Բեբուտովների բաղնիքները, յարմարեցնելով նրանց՝ թէ հասարակ և թէ ցեխի բաղնիքներ ունենալու, բերելով ցեխը Ախտալից և այլն։

Բացի բժ. Լունկեվիչի յօդուածներից կայ մի հետաքրքիր յօդուած Մելիքսեթ-Բէկովի՝ «Բուժական ջրերը պատմական Հայաստանի» վերնագրով, որի հետ արժէ ծանօթանալ։

Բժ. Բ. Ա.-ի

## ԱՐՏԱՍԱՀՄԱՆԵԱՆ ՆՈՐ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԱՍԻՆ

1.

Ինչպէս երևում է Լոնդոնի «Ararat»-ի մէջ լոյս տեսած յայտարարութիւնից, Պարիզում սկսել է հրատարակուել մի նոր հայկական երկամսեայ թերթ «Արձագանք Պարիզի» անունով։ Հրատարակութեան նպատակն է պաշտպանել ազգային շահերը և յա-

ջողեցնել «բոլոր հայերի սրբազան միութիւնը այնպիսի կրիտիքական մոմենտներին, ինչպէս ներկայումս է»։ Նա գրուած է չեզոք հողի վրայ և հեռու է կուսակցական քաղաքականութիւնից։ Խմբագրութեան հասցէն, Paris, 227. Boulevard Raspail. բաժանորդագինը տարեկան 8 ֆր., արտասահմանի համար 10 ֆր.

II.

Այս օրերս Լօնդօնում լոյս է տեսել մի ընդարձակ գիրք Հայաստանի մասին «Armenia past and Present» վերնագրով։ Գրքի հեղինակն է W. L. Williams; իսկ առաջաբանը գրել է յայտնի հայասէր, պարլամենտի անդամ O. Connor-ը։

Ահա գրքի բովանդակութիւնը.

I մաս. Երկիրը և ժողովուրդը. a) աշխարհագրական, в) ժողովրդագրական, c) տնտեսական։ II մաս. պատմական a) Մեծ Հայքի հին թագաւորութիւնը. в) Փոքր Հայքի թագաւորութիւնը. c) Թիւրքերի լծի տակ. д) Հայոց եկեղեցու պատմութիւնը։ III մաս. a) Նորագոյն խնդիրը, в) Հայկական ձգտումները. c) Ներկայ յարմարութիւնը։

Յաւելուած. Հայերը ու յետագայ Հռոմէական կայսրութիւնը։ Քարտէզներ. 1) Մեծ Հայաստանի հին թագաւորութիւնը։ 2) Ենթադրեալ ինքնավար Հայաստանը։

## ՆՈՐ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ

Ստացանք Դ—նի «Ինչու ընձեռեցին պատերազմը ոգու և հայ մտաւորականութեան ձախ թեւերը»։

Կ. Հ. Բ. Ընկ. և Կ. Կոմիտէի նախագահ Ս. Յարութիւնեանցի անունով Ամերիկա գաղթած մշեցի Խոսրով Կոնչոյեան 200 ռ. է ուղարկել, մշեցի Ալէքսան Մովսէսեանին յանձնելու համար։ Ալէքսան Մովսէսեանի հասցէն իմացողները թող բարեհաճեն յայտնել Հ. Բ. ընկերութեան գրասենեակում։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

# Յայտարարութիւններ

Հայկակ. Կենտրոնական Կոմիտէի բոլոր մասնաճիւղերում
վաճառւում է

ՂԱԶԱՐՈՍ ԱՂԱՅԵԱՆԻ

## ԵՐԿՈՒ ՔՈՅՐ

*(ԵՐՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ)*

*Գինն է 1 ռուբլի։ Այս գրքի վաճառումից գոյացած գումարի 30% հրատարակիչը դնում է Հայկ. Կենտ. Կոմ. տրամադրութեան տակ։*

5—5

---

*Վաճառւում է Գ. ԷԴԻԼԵԱՆԻ*

## ԴԱՍԱՒԱՆԴՄԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ

*գիրքը, գինը 65 կոպ.*

*Բովանդակութիւն. պատմողական և հարցողական դասաւանդում, հարց, պատասխան, դասի նիւթի մշակումը (դասի պատկը, նիւթի ստորաբաժանումը, բացատրութիւն), վարժութիւն, դպրոց. պիտոյքներ, դիդակտիկական կանոններ, ուսուցչի անձնաւորութիւնը։ 12 մշակուած դաս կրօնի, բնագիտութեան-աշխարհագրութեան, թուաբանութեան և հայոց լեզուի։*

3—3

---

## ԳԱՂԹԱԿԱՆԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

*Հարկաւոր են Ուսուցիչներ և Ուսուցչուհիներ. ցանկացողները պէտք է դիմեն Հ. Կ. Կոմիտէին,* Тифлисъ, Абас-Абадская пл. № 7

3—2

---

## ԴԻԼԻՋԱՆԻ ՈՐԲԱՆՈՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

*Հարկաւոր են երկու կառավարիչ, չորս օգնական-Աւագ-ուսուցիչ և ուսուցչուհիներ (մէկը կամ երկուսը ռուսագէտ)*

*Պայմանների մասին դիմել Կ. Հ. Բ. Ընկ. Գրասենեակ.* Тифлисъ, Абас-Абадская пл. № 7

3 – 2

---

*Կ. Հ. Բ. Ը-թեան փախստականների համար հիմնուած*

*կազմատանը, տողագծարանի և ծրարնոցի*

*արհեստանոցում ընդունւում են ամեն տեսակ կազմարարական պատուէրներ։ Պատրաստւում են նաև զանազան մեծութեան ծրարներ, աշակերտական տետրեր և գիւանական գրքեր։ Դիմել Գանովսկայա փող. ա. Մանթաշեանի։*

---

Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

*Հրատարակութեամբ լոյս տեսաւ և վաճառւում է*

**ԱՐԻՍՏԱԿԷՍ ՓԱՐԵՄՈՒԶԵԱՆԻ**

## „ԹԷ ԻՆՉՊԷՍ ՊԷՏՔ Է ԳՐԱԴԱՐԱՆ ԸՆԹԵՐՑԱՐԱՆՆԵՐ ՀԻՄՆԵԼ ԵՒ ԿԱՌԱՎԱՐԵԼ"

ԳՐՔՈՅԿԸ

ԳԻՆԸ 10 ԿՈՊ.

*Դիմել Կ. Հ. Բ. Ը թեան գրադարանին՝* Абасъ-Абадская 7. *կամ թէ «Գիր» գրախանութին,* Вельяминовская улица.

3—2

---

**Продолжается подписка на 1916 годъ**

на еженедѣльный общественно-политическій и литературный журналъ посвященный вопросамъ армянской жизни.

## „Армянскій Вѣстникъ"

(первый годъ)

издаваемый въ Москвѣ Ив. Т. Амировымъ при участіи видныхъ русскихъ и армянскихъ литературовъ и общественныхъ дѣятелей.

Подписная цѣна

Въ Россіи: на 1 годъ 6 руб., на 6 мѣс. 4 руб. на 3 мѣс. 2 руб. 50 коп., на 1 мѣс. 1 р. 25 коп. За границу вдовое. Цѣна отдѣльнаго номера 20 коп.

Журналъ будетъ выходитъ по воскресеньямъ. Адресъ редакціи и конторы журнала „Армянскій Вѣстникъ": Москва, Остоженка, 2-й Ильинскій пер., д. 3. кв. 2.

Редакторъ издатель

Иванъ Томасовичъ Амировъ

Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի    Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1.    Дозволено военной ценз.